
Փետրվարի 23-ը
Սովետական
Բանակի և
Ռազմածովային
Նավատորմի
օրն է։

## ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ

№ 2 ● 1984

Լույս է տեսնում 1923 թվականից



Շապիկի առաջին էջի լուսանկարը
ՎԱՀԱՆ ՔՈՉԱՐԻ

ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ




(Խմբերգ)

Իմ հա՛յ լեզու, իմ մա՛յր լեզու,
Իմ լույսն ես դու, իմ ուժն ես դու,
Մեր հին տունը՝ գանձերով լի,
Դու՝ գանձատան սուրբ բանալի:

Նախնիները մեր անվեհեր
Քեզ պահել են դար ու դարեր,
Քեզ փրկել են հուր ու սրից,
Որ դու ապրես ու հասնես ինձ:

Իմ հա՛յ լեզու, իմ մա՛յր լեզու,
Իմ լույսն ես դու, իմ ուժն ես դու,
Լեզուների շքեղ շարքում՝
Մնա՛ հավերժ, մնա՛ կանգուն:

Դու՝ հայրերիս արդար կտակ,
Դու՝ հայրենի հողի պես թանկ,
Դու՝ պանդուխտին տանիք ու տուն,
Դու՝ գոյության խարիսխ ու սյուն:

Իմ հա՛յ լեզու, իմ մա՛յր լեզու,
Իմ լույսն ես դու, իմ ուժն ես դու,
Երդվում եմ՝ քեզ պահել պայծառ
Ու հասցնել դարերից դար:





## Սարի վրա

Սարի վրա՝ բույրե՛ր, բույրե՛ր,
Սարի վրա՝ կանաչ քամի,
Սարի վրա՝ փայլող արև
Ու ծաղիկներ քանի՛-քանի՛:

Սարի փեշին՝ հոսող առու,
Թռչունների ուրախ կանչեր,
Սարի վրա՝ փափուկ ամպեր
Ու լանջերին՝ դալար խոտեր:

Թիթեռների ցողերի մեջ
Ծաղիկների բույրն են շնչում,
Հովը նրանց մեղմիկ փարվում,
Քաղցր խոսքեր է շշնջում:

## Ծաղիկը

Պատուհանիս գոգին
Մի ծաղիկ կա նրբին,
Արեգակն է ժպտում,
Նրան մեղմիկ շոյում:

Ես ջրում եմ ահա
Որ նա մնա կանաչ,
Որ աճի ու բուրի
Այսպես քնքուշ, բարի:

**ՎԱՂԱՐՇԱԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ**
Լենինական, № 11 դպրոցի
5-րդ դաս.



## Աշուն

Աշուն է, աշուն,
Քամին է սուլում,
Քանդում է սիրտս,
Որ մի տերև է
Քանդում է սիրտս.

Աշուն է, աշուն,
Քամին է սուլում,
Ծառերը տխուր,
Շորերն են փոխում:

## Ձյուն

Ձյո՛ւն, ճերմա՛կ ձյուն,
Որքա՛ն ես դու մաքուր,
Որքա՛ն ես դու քնքուշ
Եվ որքա՛ն հանդարտ:

Ձյո՛ւն, փափո՛ւկ ձյուն,
Որքա՛ն հեքիաթներ կան քո մեջ,
Որքա՛ն արցունք կա
Եվ որքա՛ն երկինք:

Ձյո՛ւն, թեթև՛ ձյուն,
Որքա՛ն հույս կա քո մեջ,
Որքա՛ն լույս կա,
Եվ որքա՛ն ծաղիկ:

**ՍՈՆԱ ՄԱՆՎԵԼՅԱՆ**
Հոկտեմբերյանի շրջան,
գյուղ Բերքաշատ, 7-րդ
դասարան



«ԴԱՇՆԱՄՈՒՐԻ ՄՈՏ»
ԵՎԱ ԴԱՐՅԱՆ, 8 տ.



«ԱՄԱՌ»
ՄԵԼԱՆՅԱ ՊՈՂՈՍՅԱՆ




«ՕԴԱՆԱՎԱԿԱՅԱՆՈՒՄ»
ՏԻԳՐԱՆ ՍԱՖԱՐՅԱՆ, 10 տ.



«ԱՐՋԱԿՈՒՐԴԸ ԳՅՈՒՂՈՒՄ»
ԾԱՆԹ ՔԵՐՈԲՅԱՆ, 7 տ.

# Թանգարանում

Գորգապատ հատակը խլացրել է հայտնյա հենակների տկտկոցը, որ անցնում է սրահից սրահ: Քայլում է պապը, իր ետևից տանելով գանգրահեր թոռանը: Հենակների տկտկոցը շրջանցեց հերթական սրահը:

— Պապի՛,— բացականչեց փոքրիկը,— իսկ այս մե՞կը:

Պապը անշարժացավ շրջանցած սրահի առջև: Սառը քրտինքը պատեց նրա կնճռոտ ճակատը: Մանկան սևաթույր աչքերը փոխնիփոխ զննում են մեկ պապի խոնավ ճակատը, մեկ նրա աղաղակող հենակները, մեկ էլ սրահի ճակատը զարդարող ցուցանակը. «Հնագույն զենքեր»: Իսկ պապի հայացքը բևեռվել է դեմառդեմ կախված կիսագնդերի քարտեզին ու կարծես մրմնջում է.

— Աշխա՛րհ, ես ուզում եմ տեսնել քո նոր զենքերի թանգարանը:

ՍՈՒՍԱՆՆԱ ԽԱՉՅԱՆ
ԼՂԻՄ, Հադրութի շրջան, գյուղ Էդիլլու, 9-րդ դասարան

ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ

# ՊԱՐՈՒՅՐ ՍԵՎԱԿԻ ՀԵՏ

## 2.

Ամառային արձակուրդներն էին: Պարույրի հետ Մոսկվայից գնացքով ուղևորվեցինք Երևան: Որոշեցինք մի քանի օր անցկացնել նրա հայրենի գյուղում՝ Զանգախչիում: Երևանից մենք ուղիղ մեկնեցինք Արտաշատ: Մի օր մնացինք մեր տանը: Մորս հետ խոսում էր Խոյի բարբառով:

— Նանա՛, ախչիկյերն ընձը կսիրա՞ն:

— Ընչը՞ չեն սիրա, ա՛յ բալամ:

— Ախ շատ բեջուռա յեմ, է՛, սկյը խորոտ չեմ:

— Խելքյըտ ի խորոտ, բալա՛ս, քեզըմե խոռոտ տըղը կա՞ աշխրքիս իրեսին:

Ես ակամա հիշեցի մեր լեհ դասընկերուհուն...

Վաղ առավոտյան մենք ճանապարհվեցինք: Զեյթունի գնացող բեռնատարը մեզ հասցրեց Զանգախչիի մոտերքը: Ճանապարհը նախկին վեդուց անցնում էր Ղարաբաղլար, իսկ հետո սարերի ու քարերի միջով ձգվում դեպի Զանգախչի: Ասֆալտի մասին խոսք լինել չէր կարող: Փոշու հսկայական ամպերը բարձրանալով մեքենայի ետևից, երկար ժամանակ շարված մնում էին ճանապարհի երկայնքով մեկ: Ոտից գլուխ փոշոտվել էինք: Մի երկու տեղ մեքենան կանգ առավ, շարժիչը հին էր, լավ չէր աշխատում: Ինչպես գյուղում են ասում՝ արևմտոցին տեղ հասանք: Մեզ առաջին նկատողը Պարույրի քրոջ տղան՝ Հրահատն էր: Երեխան ուրախությունից գլուխը կորցրած, փոխանակ բեռուն մոտենալու, վազեց աչքալուսանք տալու Ազիին՝ Պարույրի մորը... Գյուղի ծուռումուռ, նեղ փողոցը, որ ավելի շուտ մի քարքարոտ կածան էր, շրջանցում էր կավաշեն, միահարկ տները և դանդաղ բարձրանում սարնիվեր: Շատ էինք հոգնել, փոշոտվել, շտապում էինք հասնել տուն: Բայց ամեն քայլափոխի հանդիպում էին գյուղացիներ, մոտիկ ու հեռու բարեկամներ, բոլորն էլ կարոտած, բոլորն էլ սրտանց գրկախառնվում էին Պարույրի հետ, պաչպչվում: Նրանք հերքում էին աստվածաշնչյան այն իմաստությունը, թե մարգարեն իր գավառում պատիվ չունի: Մեր ճամպրուկներն ու ցանցազամբյուղները, որոնք տոգել էին մանր-մունր նվերներով, կեղտոտված սպիտակեղենով ու թղթերով, մեզնից շատ առաջ տեղ էին հասել: Հարցերին ու կատակներին վերջ չկար: Հեռվից վազելվազ եկավ Երազիկը՝ Պարույրի քույրը: Փաթաթվեց ու պաչեց, պաչեց ու պաչեց: Չէր կշտանում: Հետո եկան մյուսները: Հերթ չէին տալիս իրար: Խեղճ Ազին չէր կարողանում մոտենալ, մի երկու քայլ հեռու, ձեռքերը մեկնած լաց էր լինում:

— Պարույրս, Վարդգեսս...

Պարույրի աչքն առավ մորն ու մի կերպ ազատվելով մյուսների գրկից, մոտեցավ նրան: Մի բուռ Ազին կորավ Պարույրի գրկում: Համբուրում էր ու լաց լինում: Առհասարակ, պետք է ասեմ, Պարույրը շատ էր զգացմունքային: Նույնիսկ սովորական խոսակցության ժամանակ մեկ էլ աչքերն արցունքոտվում էին:

— Բա հայրիկը որտե՞ղ է,— անհանգստացավ Պարույրը:

Հենց տան շեմին կանգնած էր հայրը, կողքին՝ թխլիկ ոչխար: Պարույրի ոտքերի առաջ հեղվեց կարմիր արյունը...

Ամբողջ գիշեր անցկացրինք կերուխումի մեջ: Վաղ առավոտյան Պարույրը հագածկապած ձայն տվեց ինձ. «Արթնացիր, սինյոր, քեզ մեծ գործեր են սպասում»... Կարծեմ այս բառերով էր արթնացնում Սեն-Սիմոնին իր ծառան: «Սինյորը», այսինքն՝ ես, գիշերվա կերուխումից հետո, աչքերը չէր կարողանում բացել: Բայց «ծառան» համառում էր, ճար չկար, պետք էր վեր կենալ: Ազիի պատրաստած փափլիկ ու մաքուր տեղաշորի մեջ մի քանի անգամ ճմլկոտելուց հետո, վեր կացա:

(Սկիզբը՝ № 1-ում)

Մեր գործն այն էր, որ պետք է գնայինք Սոմրովի սար, որտեղ Նավչալուի յայլաներն էին: Ես ծնվել ու մեծացել եմ հովտում, Արարատյան հարթավայրում, ինձ համար Չանախչին արդեն իսկ սար է, իսկ չանախչեցու համար «սարը» իրենցից հեռու է: Լեռնային աղբյուրների սառը ջրով մի քանի անգամ երեսս շփելուց հետո, կարծես թե մի քիչ սթափվեցի: Քիչ դեր չխաղաց նաև սարերից փչող քամին, որ լեռնային աղբյուրների զովությամբ շնչշնչում էր ականջիս տակ ու շոյում դեմքս: Մոսկովյան ժխորից հետո, այնպիսի մի անդորր էր տիրում շուրջս, որ ասես լռությունը զգում էր ականջներիս մեջ:

Ուտելեղենով բարձված էշը կազմուպատրաստ սպասում էր դռանը: Ճանապարհվում ենք դեպի «սար»: Մեզ հետ է նաև Պարույրի հորեղբոր տղան՝ Մուշեղը, որն, ի դեպ, շատ նման է Պարույրին և համարյա նրան հասակակից: Մագլցում ենք լեռնային անանցանելի կածաններով: Պարույրը գնում է առջևից: Մի տեղ ոտքիս տակից քարը գլորվեց, քիչ էր մնում ես էլ գլորվեի ետևից: Պարույրն զգուշացավ, ինձ հրեց իրենից առաջ:

— Իսկ դու ի՞նչ է, չե՞ս վախենում:

— Չէ, քարերն ինձ ճանաչում են:

Ծիծաղեցի: Բայց դա ճիշտ էր: Ոչ միայն քարերը, այլև քարերի արանքում ցցված վայրի խոտերն ու ծաղիկներն էլ գիտեին նրան: Ավելի ճիշտ կլինի ասել՝ Պարույրն էր նրանց ճանաչում: Քաշում-հանում էր մի ծաղիկ ու հարցնում.

— Սրա անունն ի՞նչ է: Իսկ սրա՞: Իսկ դու գիտե՞ս, այս բույսը ի՞նչ է կոչվում: Ա՛յ սրանից դեղորայք են պատրաստում: Ուրցի հոտը սիրո՞ւմ ես...

Եվ ինքն էլ պատասխանում էր: Հասանք սարի գագաթը: Սա արդեն երկրորդն էր: Ոտքերս հազիվ էի քարշ տալիս:

— Լսի՛ր, չհասա՞նք ձեր սարը:

— Չէ՛, այս ձորն էլ կտրենք...

Էշը ճամփան գիտեր, կամ ինչպես Պարույրն էր ասում՝ լարված էր, բավական առաջ էր անցել մեզանից: Մուշեղը հետևում էր նրան:

Մենք նույնպես իջանք ձորը և դժվարությամբ հաղթահարեցինք երրորդ վերելքը: Սա արդեն «Պարույրի սարն էր»՝ Նավչալուն: Ուղիղ ձորի պռնկին կախված էր մի բարձրաբերձ ժայռ, որտեղից հիանալի երևում էր ամբողջ շրջապատը: Չորս կողմը՝ գագաթներ «մեջք-մեջքի տված», իսկ նրանից ներքև՝ անդնդախոր ձորեր...

— Հիշո՞ւմ ես Մոսկվայի մեր «Քոչարին»,— հանկարծ հարցրեց Պարույրը,— տես, թե ոնց են մեր սարերը «Քոչարի» պարում: Մենք մեր սարերից ենք սովորել «Քոչարի» պարել:

Հիրավի, դա հսկաների շուրջպար էր, որի սկիզբն ու վերջը չէր երևում: Մի կողմից ձգվում էր Գեղամա լեռների բեկբեկուն շղթան, իսկ մեզնից ոչ հեռու ծփում էր մի կանաչ զանգված: Խոսրովի անտառն էր: Անտառն էլ մեր ժողովրդի նման փոքրացել էր ու նոսրացել, հրո ճարակ դարձել: Թեկուզ և փոքրացած, բայց հեթանոսական շրջանից եկել հասել է մեր օրերը:

Մենք թիկն էինք տվել նոսր աղվամազով ծածկված ժայռի գագաթին և լռում էինք: Նայում էինք ու լռում: Եվ, կարծում եմ, առանց խոսելու էլ, նույն մտքերով էինք լցված և նույն զգացմունքներով: Այսպես անցավ մոտ կես ժամ: Մենք չէինք նայում իրար, մոռացել էինք մեզ: Իսկ երբ հանկարծ նայեցի, տեսա Պարույրի աչքերը արցունքոտել են... Ես չուզեցի խանգարել նրա տխրությունը... Շուռ եկա դեպի Մասիսը... Այսպիսի Մասիս ես ոչ մի տեղից չեմ տեսել: Ավելի ճիշտ, ես Մասիսը շատ ավելի մոտիկից եմ տեսել, Խոր Վիրապից, որ համարյա նրա լանջերին է, բայց չգիտեմ ինչու, ինձ թվաց, թե Մասիսն այստեղից ավելի մոտ է երևում: Թվում էր, մենք կանգնած ենք նրա ձյունոտ բարձունքներին, շնչում ենք նրա սառը օդը: Սանձակոտոր քամին, որ Պարույրի իսկ բառերով ասած, անվերջ վրնջում էր իր զամբիկից զրկված հովատակի նման, թվում էր, հենց Մասիսից է փչում, նրա ձյունոտ բարձունքներից: Շրջապատում ոչ մի ծառ չկար, մերկ սարեր էին ու կծող արև, ամեն ինչ վառող կրակի գույն:

— Ուզո՞ւմ ես լողանալ,— հանկարծ հարցրեց Պարույրը:

Մանկական չարաճճիությամբ ժպտում էր: Ես ուրախ զարմանքով նայեցի նրան.

— Որտե՞ղ:

— Քո ի՞նչ գործն է... Ես էլ եմ լողանալու:

Սա ինձ ավելի զարմացրեց: Ես գիտեի, որ Պարույրը բաց ջրում չէր լողանում, վախենում էր: Հիշում եմ, մի անգամ միասին քրոջս հյուր էինք գնացել Գետաշեն, որտեղից հոսում է Արտաշատի ջրանցքը: Մոտ մեկ կիլոմետր երկարության թունելը կտրում անցնում է հսկայական քարաժայռը և գյուղեզրով դուրս գալիս: Քրոջս տղաների ու ինձ համար մեծ ուրախություն էր մտնել թունելի մի ծայրից ու լող տալով մյուս կողմից դուրս գալ: Մենք մի ամբողջ ժամ լողանում էինք, երբեմն ջրից դուրս գալիս, մի քանի րոպե արևայրուք ընդունում ու նորից նետվում ջուրը: Չնայած հուլիսյան կիզիչ արևին, Պարույրը նստեց թունելախորշից բավական հեռու, մի ծառի տակ և զբաղվեց մի հնամաշ ամսա-

գրով, որ չգիտեմ քրոջս տան որ անկյունում էր տեսել, վերցրել:

Եվ այսպես, զարմանքով սպասում էի հանելի անակնկալին: Մինչդեռ երկինքը հետզհետե մթնում էր: Ամպերի հսկայական զանգվածները կախվեցին սարերի վրա: Արևը բոլորովին անհետացավ: Քամին րոպե առ րոպե սաստկանում էր: Հետո հեռվից լսվեց մի ահավոր որոտ, որի արձագանքը ձորն ի վար գլորվող քարերի նման տարածվեց շրջակա լեռներում ու ձորերում: Ինձ թվաց՝ երկինքը փլվեց ուղիղ մեր գլխին, ավելի ճիշտ՝ օրորվեց ու փլատակվեց հենց այն ժայռը, որի վրա մենք կանգնած էինք: Հետո բախվեցին ամպերի հսկայական զանգվածները, որոնք մերթընդմերթ լուսավորվում էին կայծակնեղեն թրերի բեկվող շողարձակումներով: Կարկտախառն անձրևի խոշոր շիթերը շեղակի հարվածում էին մեր այտերին: Ես այլևս ոչինչ չէի տեսնում: Առաջին անգամ, անկեղծ ասած՝ ոչ առանց վախի, ես տեսնում էի ամառային ամպրոպը լեռներում: Կարծես թե երկնքում իրենց ուժերն էին չափում բոլոր չար ոգիները, կայծակե թրերով հարվածում իրար, անձրևի խոշոր շիթերով արցունքներ թափում և ամեն մի հարվածից հետո դիվական քրքիջով ու որոտով լցնում սարերն ու ձորերը: Ես երկար ժամանակ կծկվել էի ու դեմքս ձեռքերով ծածկել:

Եվ հանկարծ աչքս առավ Պարույրին: Ես չճանաչեցի նրան: Աչքիս ընկան նախ նրա սպիտակ, մեծ ատամները, քրքջացող մեծ ատամները: Ձեռքերը լայն տարածած, ինքն իրենից մեծացած, կարծես թե չափ էր տալիս լեռնային ամպրոպի այդ վայրի համանվագին: Ինձ թվաց, թե դա Պարույրը չէր, այլ շանթ ու որոտի աստված: Ասես նա էր ոգեկոչել չար ոգիներին: Ասես մտրակում էր ամպերին, նրա քրքիջն էր արձագանքում լեռներում ու անդնդախոր ձորերում: Ասես Պարույրն ինքն էր արարել այդ բոլորը և նա ինքն էլ այդ տարերքի մի անբաժանելի մասն էր: Ինչքա՞ն շարունակվեց այդպես: Չգիտեմ: Վերջը չէր երևում: Իսկ վերջը եկավ նույնքան անսպասելի, որքան և սկիզբը: Երկինքը բացվեց, ամպի ոչ մի ծվեն չէր երևում: Արևն առաջվա պես ծիծաղում էր վերևից, կարծես ոչինչ չէր պատահել:

— Լա՜վ լողացանք,— ասացի ես՝ ոտից-գլուխ թրջված,— բայց մի՞թե ձեզ մոտ հաճախ են լողանում...

Ես հետո Պարույրի ամեն մի ստեղծագործությունը կարդալիս հիշել եմ այդ ամպրոպը, կայծակների շառաչը, կարկտախառն անձրևը, ամպերի ահեղ որոտը, բ ությա[ն] ուժերի խոլական պայքարը... բուռն ու հախուռն:



Չանախչիից վերադառնում ենք Արտաշատ: Երկուսս էլ պարզ հագնված, ոտքներիս՝ հնամաշ սանդալներ: Ազին բաներ էր դրել հետներս, որից ուտել-փքվել էր խուրջինը: Պարույրը, զինվորական ուսապարկի նման, խուրջինը կապեց շալակին, ճամպրուկը ես վերցրի: Որոշեցինք քայլել, որտեղ մեքենա պատահի, այնտեղ էլ նստենք: Մի երկու մեքենա անցավ՝ մեզ չվերցրեց: Գյուղից բավական հեռու մի «Պոբեդա» կանգ առավ: Տեղ-տեղ ցեցը կերած, հալից ընկած, ետևի նստատեղի կեսը բեռնված էր ինչ-որ իրերով. Պարույրը նստեց վարորդի կողքին, զոլավոր խուրջինը փառավորապես տեղավորեց ոտքերի տակ: Ես նստեցի ետևում: Մեքենան հազալով-փնչալով տեղից պոկվեց: Վարորդը, համարյա մեզ հասակակից, աչքի պոչով նայեց Պարույրի զոլավոր խուրջինին, հետո քթի տակ խնդմնդալով, հարցրեց.

— Ի՞նչ է մեջինը:

Պարույրն անմիջապես որսաց թաքնված ծաղրը:

— Նավթալին:

— Էսքան նավթալինն ինչի՞դ է պետք,— անկեղծորեն զարմացավ վարորդը:

— Պե՞տք է, վերցրու լցրու ավտոյիդ վրա, ցեցը չուտի...

— Էս էլ որ չլիներ, պարախոդո՞վ էիր գնալու:

— Չէ՛, ինչո՞ւ, էշախոդով կգնանք...— վրա բերեց Պարույրը:

Հարմար պատասխան չգտնելով, վարորդը լռեց: Մի քանի րոպե գնում ենք լռածսկված: Վարորդից ծխելու թույլտվություն ստանալով, Պարույրը գրպանից հանեց չիբուխը և քիսայից ծխախոտը լցնելով, վառեց: Վարորդը աչքի պոչով նայեց նրան և, ըստ երևույթին, եզրակացրեց, որ հարմար պահն է պատասխան հարվածը տալու:

— Դրա շինողը սա՞ղ է,— չիբուխը ցույց տալով հարցրեց վարորդը:

— Չէ, մեռել է:

— Ափսո՜ս,— կեղծ հոգոց հանեց վարորդը:

Պարույրն, իհարկե, կռահեց վարորդի խոսքի հետագա ընթացքը, և միամիտ տեսքով հարցրեց.

— Ի՞նչն է ափսոս:

— Մի հատ էլ դրանից ինձ համար շիներ:

— Որ շատ ես ուզում՝ մեր տանը սրա

նման մի լուլակ կա (երեխայի միզելու հարմարանք՝ օրորոցում), կտամ քեզ՝ մեջը թութուն լցրու, հա ծխի...

Այս անգամ արդեն անհնար էր ծիծաղը զսպել: Երեքս էլ ծիծաղեցինք: Վարորդը կատակ հասկացող տղա էր երևում, չնեղացավ: Ծաղափլուից նոր էինք դուրս եկել, մեքենայի ղեկը սկսեց թափահարել: Մեքենան աջ քաշելով, նա անմիջապես իջավ: Մենք էլ՝ նրա հետ: Մեքենայի ետևի աջ դողը թողել էր:

— Ընենց ծուխ ես դրել, ոնց որ արջ բռնես:

— Ա՜յ տղա, ո՜նց էլ գլխի ընկար...

Եվ այսպես փոխադարձ կրակոցները շարունակվեցին մինչև Արտաշատ: Այստեղ, հին շուկայի մոտ, խնդրեցինք մեքենան կանգնեցնել: Պարույրը նոր էր իջել, նրան մոտեցավ միլիցիայի կապիտան Ցուցուլյանը, որն այդ տարիներին Արտաշատի միլպետի տեղակալն էր: Նրանք ջերմորեն գրկախառնվեցին:



— Փըստդ նստե՞լ է,— ասաց Պարույրը:

Վարորդը պահեստայինն ակը հանեց պահոցից և հմուտ շարժումներով սկսեց հանել ծակված ավտոդողը:

— Մի էն չիբուխդ տուր, գայկաները թուլացնեմ,— ասաց նա:

— Առանց էն էլ գայկաներդ թույլ են, էլ ինչո՞ւ ես թուլացնում...

Նորից շարունակում ենք ճամփան: Պարույրն անվրդով շարունակում է ծխել:

— Ախպոր պես ասա, ո՞վ է,— ականջիս տակ փսփսաց վարորդը:

— Պարույր Սևակը:

— Վայ ամա՜ն, խայտառակ եղա,— ասաց վարորդը:

Ես հազիվ հասցրի իջնել, նա պոկվեց տեղից:

— Ա՜յ տղա, արի փո՜ղդ ստացիր, ո՞ւր ես փախչում,— ձայն տվեց Պարույրը ծիծաղելով:

(Շարունակելի)




ԱՇՈՏ ԿՆՅԱԶՅԱՆ

Նկ. ՆԻԿՈԼԱՅ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Մենք պատերազմից հետո էինք ծնվել: Մեր տների պատերից կախված զինվորական համազգեստներով տղամարդկանց լուսանկարները այնքան էլ հասկանալի չէին մեզ: Մենք նրանց չէինք տեսել: Փոխարենը մեր տեսած կռիվ կինոնկարները հոյակապ էին, քանի որ մերոնք հաղթում էին: Մերոնք հաղթել էին, մենք արդեն հայտնագործել էինք, որ աշխարհի ամենաուժեղ բանակը Կարմիր բանակն է:

Այդ բանակի զինվորներին մենք տեսնում էինք գրեթե ամեն օր: Նրանք ճիշտ այնպիսին էին, ինչպիսին կռիվ կինոնկարներում տեսած մեր հերոս զինվորները՝ նույն համազգեստներով, նույն ուսապարկերով ու ավտոմատներով, ասես ելել էին այդ ֆիլմերից (և հենց նրանք էին ջարդել «ֆրիցներին»): Ծարասյունով ու երգելով նրանք գալիս անցնում էին արվարձանի մեր լայն ու փոշոտ փողոցով: Նրանց սապոգների տակից փոշի էր բարձրանում, երբ մենք վազքով հասնում էինք նրանց, քայլում նրանց կողքից ու կրծքանշան խնդրում: Չնայած բանակում ծառայելու մեր հերթն ու ժամանակը հասնելուն դեռ շատ տարիներ կային, զգում էինք, որ մենք էլ զինվոր ենք և կրծքանշան էինք խնդրում մեր մայկաներին կպցնելու ու դրանով ավելի շատ զինվորի նմանվելու համար: Պատերազմը մեր կարծիքով նրա համար էր եղել, որ հերոսներ ծնվեին:

Մեր տների պատերից կախված հնաոճ, մաքուր շորերով, սուր բեղերով պապերի ու թախծոտ աչքերով տատերի խունացած նկարները մեզ առավել անհասկանալի էին: Մեր պապերն էլ զինվորներ էին եղել, մեկ ուրիշ, հին կռվի զինվորներ: Նոր կռվի մասին մենք ամեն ինչ գիտեինք (գիտեինք, թե որ ֆիլմում մեր սիրելի հերոսն ով է, ինչպես և ինչքան «ֆրիցների» է հաղթել): Վերջապես հաստատ գիտեինք ամենակարևորը՝ մենք հաղթել ենք: Իսկ հին կռվի պատմությունների մեջ մեր հաղթությունը չէինք տեսնում: Մեր պապերի մշուշոտ պատմությունների մեջ մի բան էինք հաստատ հասկանում, այն, որ նրանք էլ զինվորներ են եղել: Անհասկանալի էր մնում, սակայն, թե հին կռվի ժամանակ ինչո՞ւ նրանք չեն հաղթել: Չեն հաղթել, ուրեմն պարտվե՞լ են: Վերջապես մեր պապերի երգերից, որ նրանք երգում էին խռպոտ ու հուզված ձայներով, մենք զգում էինք, որ նրանք չեն պարտվել (պարտված գերմանացիները այդպես չէին երգում, նրանք ընդհանրապես չէին երգում):

Մեր հավաքատեղին Մեծ քարն էր: Անհասկանալի էր, թե ինչպես էր այդ հսկա քարը հայտնվել մեր փողոցի անկյունում՝ համատարած կավահողե փողոցների խաչմերուկում, բայց լավ էր, որ կար, քանի որ մենք նստում էինք նրա վրա, խաղում նրա շուրջը: Մեր բոլոր խաղերը Մեծ քարից էին սկսվում: Այդտեղ էինք խմբերի բաժանվում և «կռիվ» խաղալիս այդ քարն էր, որ գրավում էինք ու պաշտպանում: Այն շատ էր հարազատ մեզ, քանի որ նրա վրա և նրա շուրջն էին նստում հանգստանալու մեր թաղով անցնող զինվորները, և մենք անգիր գիտեինք նրա բոլոր եղուստներն ու փոսերը: Այդ քարի շուրջն էին հավաքվում նաև մեզանից մեծ տղաները, որ արդեն խոսում էին աղջիկներից և այդ ժամանակ մեզ թույլ չէին տալիս իրենց կողքը նստել:

Մեր թաղում մեր իսկ աչքից աննկատ մի նոր փողոց անեց: Այն հատեց մեր փողոցը և գնաց Մեծ քարից այն կողմ: Հայաստանն աշխարհի այլևայլ շրջակա վայրերից եկած մարդիկ բնակվեցին այնտեղ, և փողոցը լցվեց մեզ նման երեխաներով:

Բայց եղավ անսպասելին, մի սովորական ու գեղեցիկ օր նոր փողոցի տղաները մեզ ասացին՝ Մեծ քարը մերն է, մենք ենք այստեղ խաղալու: Եվ վեճ ծագեց: Երբ նրանք գալիս էին մեզ հետ Մեծ քարի մոտ խաղալու, մենք նրանց չէինք ասում՝ Մեծ քարը մերն է: Քարն իր համար եղել էր ու կար, կար նաև այն ժամանակ երբ նրանք չկային, երբ անգամ մենք չկայինք: Ուրեմն էլ ինչպե՞ս էր քարը նրանցը:

Կռիվն, իհարկե, միանգամից չսկսվեց: Մեր փողոցի տղաները Մեծ քարի մոտ հավաքվում էին ով երբ կարող էր: Իսկ նրանք՝ նոր փողոցի տղաները միշտ գալիս էին խմբով: «Կռիվ» խաղալիս մենք նրանց տղաներին ընդունում էինք մեր խմբում, իսկ նրանք մեր տղաներից ոչ ոքի չէին ընդունում, բացի մեկից: Այդ միակ տղան, որ նրանք ընդունում էին իրենց խմբում՝ Լողլողն էր: Մենք այդպես էինք նրան կոչում երկար հասակի համար: Նրանց տունը մեր փողոցների անկյունում էր:

Երբ մեր տղաներից Մեծ քարի մոտ քչերն էին լինում, նրանք իրենք էին խմբերի բաժանվում, իսկ մերոնց պարզապես ասում էին՝ դուք ձերոնց հետ խաղացեք: Պատվասիրությունից դրդված՝ մենք երբեմն քիչ հոգով էինք «կռվում» նրանց դեմ և ավելի հաճախ չէինք կարողանում գրավել Մեծ քարը կամ դժվարությամբ էինք պաշտպանում այն (պաշտպանելն ավելի հեշտ էր, որովհետև «հարձակվող-

ների» հրել-ետ մղելն էր հեշտ): Երբ ողջ խումբը մեծ քարի վրա էր, ուրեմն այն գրավված էր, այսպիսին էր ակամա ստեղծված «կռիվ» խաղի պայմանը:

Թերևս թվով ավելի շատ «հաղթանակները» նրանց իրավունք տվեց կարծելու, թե Մեծ քարն իրենցն է: Նրանք կոպիտ էին խաղում, այնպես էին հրում մեզ, որ իսկապես պարտադրում էին կռվելու: Երբ մեր փողոցում հայտնվում էր զինվորական շարասյունը, նոր փողոցի տղաները, մոտ չէին գալիս ու կրծքանշան չէին խնդրում զինվորներից: Միայն լուռ նայում էին, թե ինչպես ենք մենք հին ծանոթների նման ռուսերեն բառեր կոտրատում զինվորների հետ և ինչպես ենք նրանց կողքից քայլում մինչև մեր երկար փողոցի վերջը: Մեր ու նոր փողոցի տղաների կռիվն սկսվեց նրանից, որ նրանցից չգիտեմ ով պոկեց մեր տղաներից մեկի մայկայից զինվորի տված կրծքանշանը: Տուրուդմբոցն սկսվեց: Զարմանալիորեն նրանք պատրաստ էին դրան, կարծես ըսպասում էին և հենց դա էին ուզում: Միանգամից վրա տվեցին նրանց փողոցի բոլոր տղաները և որտեղի՞ց այդքան շատ: Բնազդով թե սովորության բերումով մենք ակամա թռանք Մեծ քարի վրա: Մեծ քարը օգնեց մեզ երկար պաշտպանվելու, նրանք շրջապատել էին մեզ, և մենք ավելի ու ավելի դժվարությամբ էինք պաշտպանվում: Միակ օգնողը մեզ Մեծ քարն էր: Դա պաշտպանություն էր և ոչ թե հավասարների կռիվ...

Շատ բան տեսած մեր թաղում նման լուրջ կռիվ չէր եղել: Եղած տղայական կռիվները դրա հետ համեմատած կատակներ էին: Մեզանից շատերը մի քանի օր դպրոց չգնացին:

Կռվին հաջորդեց անորոշ լռություն, որից հետո, օրեր անց, մենք նորից հավաքվեցինք Մեծ քարի մոտ ձեռ ու ոտ կապկպած: Դա մեր վերջին հավաքն էր:

Լուռ ու մունջ նստոտեցինք ոչ թե Մեծ քարի վրա, այլ նրա շուրջը: Բոլորս նույնն էինք մտածում, թե ո՞վ էր այդ ամենի մեղավորը. ախր տնեցիք էլ մյուս կողմից էին նախատում, ասելով, թե մենք անպետք ենք, կռվարար և մարդ չենք դառնա, դպրոցում էլ իր հերթին: Անարդար մի բան կար մեզ խեղդող, թե ինչ՝ չգիտեմ:

Դիմացի մայթով սուսուփուս տուն էր գնում Լողլողը: Այն, որ դեպի տուն էր քայլում և ոչ թե դեպի մեզ, ոնց որ ընկերությունից հրաժարվել էր նշանակում:

— Լողլո՛ղ,— զսպված ու տարօրինակ մենք նրան Պուպոք Հրայր էինք կոչում ձայնեց Հրայրը, որ մեր միջի ավագն էր: կարճահասակ, ամուր կազմվածքի և ուժեղ պարանոցի համար: Կոխ բռնելիս նրա մեջքը ոչ ոք չէր կարողանում ծալել, եղել էր՝ նա գլխով խփել էր «հակառակորդին» ու գլորել:

— Հլա մի այստե՛ղ արի:

— Ի՞նչ,— քթի տակից նետեց նա:

— Էդ դո՞ւ պիտի ասես, թե ինչ:

— Ես բան չունեմ ասելու:

— Պիտի ասես, թե ինչի՞ ես հավի ճտի պես փախչում:

— Չեմ փախչում, ես ձեզ չէի տեսել,— չքմեղացավ Լողլողը:

— Առաջին անգամն ես տեսնում մեզ, — տաքացավ Հրայրը,— էն օրվա կռիվն էլ չես տեսել, ոնց տեսնես, ձեր տունը էս խաչմերուկում չի:

— Ես կռիվ անել չեմ ուզում:

— Մե՞նք էինք ուզում կռիվ անել:

Լողլողը լուռ էր, զգում էր, որ Պուպոքը ամեն րոպե կարող էր պայթել, մեր անբարյացակամ հայացքներն էր զգում ու լուռ էր: Նա ախր մեր ընկերն էր ու վախկոտներից չէր: Մենք այդպես գիտեինք նրան, այլ բան է մտածեինք, թե վախկոտ է: Ուրեմն ինչո՞ւ կռվին չմասնակցեց, չէ՞ որ այստեղ էր: Կարծես գիտեր, որ կռիվ է լինելու և չմասնակցեց: Կարծես նախօրոք գիտեր, որ պարտվելու ենք և չմասնակցեց: Դրանից ախր դավաճանության, դավաճանության հոտ էր գալիս: Մենք երեխավարի գիտեինք, որ տղայական նման կռիվներում գործում են նույն օրենքները, ինչ մեծ երկրների հարաբերություններում:

— Հիմա ես քեզ հետ կռվելու եմ, դե փախի՛ր,— ասաց Հրայրը:

— Ինչի՞ համար:

— Շան ծեծ եմ տալու, Մեծ քարի համար, դե փախի՛ր:

— Չես ծեծի,— մի տեսակ խնդրելով, մի տեսակ համոզված ասաց Լողլողը:

— Հիմա ես քեզ կռվել եմ սովորեցնելու, որ էլ չփախչես,— Հրայրի ձայնը իսկապես տարօրինակ էր:

Հասկացանք, որ նա Լողլողին դաս էր տալու:

Երբ առաջին անգամ նրանք միմյանց

բռնեցին, Պոպոքը թույլ տվեց, որ նա իրեն գետին գցի: Երկրորդ անգամ ո՛չ ինքն էր գցում նրան, ո՛չ էլ թույլ էր տալիս, որ նա իրեն գցի: «Համարձակ, համարձակ»,— կրկնում էր նա: Լողլողն արդեն քրտինքի մեջ էր և անզգույշ շարժումներ էր անում: Իսկ Հրայրը չէր օգտըվում դրանից և մեր սպասածին հակառակ ինքը պարտվեց:

— Տեսնում եմ կաշվիդ համար կարողանում ես կռվել,— ասաց նա ոտքի ելնելով:

Երրորդ անգամ նա Լողլողին դըմփոցով գետին տապալեց: Չորրորդին՝ նա բռնեց հակառակորդի մեջքը: Լողլողը նըրանից բոյով էր, կարողանում էր դիմադրել: Երկուսն էլ քրտնած նայում էին միմյանց աչքերի մեջ:

— Քրտինքիդ հետ վախդ էլ է դուրս գալիս,— ասաց Հրայրը և վերջապես ծալեց նրա մեջքը:

Վերջին, վճռական մենամարտին երկուսն էլ փոշու մեջ կորած հևում էին: Մի պահ Լողլողի հայացքն ընկավ մեզ վրա և մենք նրա աչքերի մեջ ատելություն ու վախ կարդացինք: Ի զարմանս մեզ, նա մի համարձակ և խաբուսիկ շարժում արեց և չհասկացանք ինչպես գետին գցեց Հրայրին: Լարված սպասում էինք Հրայրի վեր կենալուն: Այդ պահին նրա փոխարեն մենք էինք փոշմանել, որ սկըզբից նա հենց այնպես երկու անգամ թույլ տվեց իրեն պարտվել: Լողլողն ինքն էլ զարմացած կանգնած էր մնացել նույն դիրքով: Հրայրը վեր կացավ, փոշին թափ տալով շալվարի վրայից, առանց մեզ նայելու, նստեց Մեծ քարի վրա: Իզուր էինք մենք մի այլ բան սպասում, նա ազնիվ և պատվախնդիր տղա էր:

— Գնա պարծեցի՛ր, որ դու հաղթեցիր,— դիմեց նա Լողլողին, որ դեռ սառած կանգնած էր, —գնա՛ ու էլ աչքիս չերևաս:— Լողլողն հեռացավ:

Մենք կարծես միանգամից մեծացանք: Այդ օրվանից մեր տների պատերից կախված զինվորական համազգեստներով տղամարդկանց լուսանկարները մեզ ավելի հարազատ ու հասկանալի դարձան: Մեր տների պատերից կախված հնաոճ, մաքուր շորերով, սուր բեղերով ու թախծոտ աչքերով մեր պապերի ու տատերի խունացած նկարները ավելի թանկ ու հարազատ դարձան... Ու մեր աչքում շատ բան փոխվեց աշխարհում, իսկ Մեծ քարը այսօր էլ դեռ կա:

ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

# ԵՎ ՁՅՈՒՆՆ ԻՋԱՎ...

Մի շշունջ էր շրջում մարմանդ.
— Թող ձյուն իջնի Արարատից,
Իջնի զգույշ ու մեղմօրոր,
Եվ զորությամբ իր փարատի
Հոգնությունները մեր բոլոր...

Փաթիլ-փաթիլ, օրոր-շորոր,
Աստղանման ու աստղաշող
Քայլի կիրճով, այգով, բակով,
Քայլի գյուղով ու քաղաքով...

Ճերմակ հագնեն առու և գետ,
Ե՛վ մայրուղի, և՛ արահետ,
Ե՛վ թուփ, և՛ ծառ, և՛ խոտ, և՛ բույն...
Ննջեն հանգիստ, մտնեն խոր քուն...

Եվ ձյունն իջավ Արարատից
Լույսի նման թեթև ու պերճ,
Դաշտը թևի պես կարապի
Լուծվեց ճերմակ թելերի մեջ:

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ԲԱՌԸ ՉԶՈՐԱՑՐՎՈՂ ԶԻՆՎՈՐ Է

ՔԱՂ
ՆՈԽԱԶ
ՆԵՐԻ
ԱՄԻԿ
ՍԼՈՋ
ԲՋԱՔ
ՈՒԼ
ԽԱԾՆ
ԱՌՆ
ԳԱՌ
ՄԱՔԻ
ԽՈՅ
ՕԴԻ

Մայրենի լեզվին հիմնովին տիրապետելու նախապայմաններից է միավանկ բառեր մըտապահելը։

Միավանկ բառերը յուրաքանչյուր լեզվի հիմնաքարերն են, որոնք ստեղծվել են ժողովուրդների առաջացման և լեզուների ծագման առաջին փուլում։ Ժամանակակից մարդը ձևավորվել է մեզնից մոտ 300 հազար տարի առաջ։ Բայց նա սկսել է իմաստավորված բառեր արտաբերել շատ ավելի ուշ։ Մի պահ պատկերացրեք, որ վայրենի վիճակից մարդն սկսում է մարդ դառնալ և հնչյուններով իմաստավորել շրջապատն ու երևույթները։ Դա մարդկային հասարակության թոթովախոս տարիքն էր, երբ անհատն ընդունակ էր միայն կարճ բառեր արտասանել։ Մի՛ զարմացեք, չէ՞ որ այդպես է նաև 1,5—2 տարեկան երեխան։ Հասկանալի է, որ մարդը չի կարող միանգամից բազմավանկ բառեր արտասանել։ Յուրաքանչյուր լեզվի ծագման ժամանակ առաջին հերթին ստեղծվում են «առաջին անհրաժեշտության» բառերը, որոնք հիմնականում միավանկ են լինում։ Այսպես, ապա յուրաքանչյուրդ փորձեք թվարկել մարդու մարմնի մասերը. մազ (նաև՝ հեր կամ վարս), մատ, աչք, ունք, քիթ այտ, վիզ, պորտ, թաթ, ոտք, ձեռք, ծամ և այլն։ Տեսնո՞ւմ եք, մարդու մարմնի մասերի անվանումների մեծ մասը միավանկ է։ Նշանակում է դրանք ունեն ազգային դիմագիծ։

Այս կարգի միավանկները հայերենի արմատական բառերն են, որոնք հետագայում դարձել են ճոխ ու շքեղ մեր լեզվի ատաղձը:

Այսպիսով, դուք պիտի իմանաք, որ հիմնականում ազգային են յուրաքանչյուր լեզվի միավանկ բառերը: Միաժամանակ նրանք տվյալ լեզվի ամենատարեց բառերն են:

## ԱՅԾ, ՈՉԽԱՐ

Դուք, իհարկե, գիտեք, որ «այծ»-ը միավանկ բառ է: Հիմա իմացաք նաև, որ դա բընիկ հայ բառ է: Վաղնջագույն ժամանակներից Հայկական լեռնաշխարհում մեր նախնիները զբաղվել են այծաբուծությամբ: Կասկածել չի կարելի, որ այդ անունն էլ նրանք են տվել այծին: Անհնար է, որ ինքդ այծ պահես և գնաս ու հարևան ժողովուրդներից մի բառ փոխ առնես և նրանով անվանես այծին:

«Այծ» անվան հետ կապված շատ բառեր կան հայերենում: Եկեք սովորենք ու մտապահենք դրանք: Դա մեզ պետք է ոչ միայն մայրենի լեզուն լավ տիրապետելու, այլ պատմություն, աշխարհագրություն և ուրիշ առարկաներ յուրացնելու համար:

«Այծ» բառն ունի այսպիսի հոմանիշներ՝ քաղ, նոխազ, ների, ամիկ, ալոջ, բզաք, ուլ: Սակայն իմաստներով սրանք հավասարազոր չեն: Ամեն մեկն իր նրբերանգն ունի: Քաղ է կոչվում արու այծը՝ նոխազը: Նոխազ է այն արու այծը, որն առաջնորդում է հոտը: Բայց այծերի հոտն առաջնորդողը ոչ միայն նոխազ է կոչվում, այլև՝ ների: «Հասավ ների այծը կոտրած ստինճանին, զգաց, որ մահն աչքի առաջ է»: Մտաբերեցի՞ք Վրթանես Փափազյանի «Լուր դա լուր» նշանավոր պատմվածքը:

Ամիկ է կոչվում մի տարեկան արու ուլը: Ուշադրություն դարձրեք այս բառի ամ արմատին: Ամ նշանակում է տարի: Իրենց մեջ «ամ» արմատն են պահում հետևյալ բառերը՝ միամյա, բազմամյա, տասնամյա, հնգամյակ, ամանոր: Փորձեցեք մի քանիսն էլ ինքներդ մտաբերել: Ալոջ է կոչվում էգ ուլը, բզաքը՝ կոտած արու այծն է, ուլը՝ այծի ձագը:

Հիմա դառնանք «այծ» արմատով կազմված բառերին: Այծքաղ. սա բարեկազմ թեթևասահ վիթն է, որին անվանում են նաև ջեյրան, քարայծ, համույր, կխտար, վայրի այծ: Եկեք քննենք այս բառը՝ այծ+քաղ= այծքաղ: Բայց այս ի՞նչ է, չէ՞ որ «քաղ» բառն էլ նըշանակում է այծ: Ինչո՞ւ են մեր նախնիները այս երկու բառերն իրար կողքի դրել: Այծքաղը մարդը չի կարողացել ընտելացնել: Դրա համար մարդու աչքում նա կրկնակի այծի ուժ է ունեցել: Եվ մարդը նրան կոչել է այծքաղ: Հայերենին խորթ չէ լեզվական այսպիսի ջրինաչափությունը: Որևէ երևույթ շեշտելու համար հայը երկու նույնիմաստ արմատ է դնում կողք-կողքի: Ահավասիկ, ճվոց=ճվճվոց:

Մեր անտառներում ապրում է հայոց բնության բանաստեղծական զարդը՝ այծյամը, որը արագավազ ու չքնաղ փոքրիկ եղջերու է: Եղջյուրներ ունեն միայն արու այծյամները: «Այծյամ» բառից է այծեմնիկը, որ նշանակում է այծյամի ուլ, միաժամանակ՝ սիրուն ու քնքուշ աղջիկ: Այծյամը կամ Այծեմնիկը հայկական իգական սիրված անուններից է: Այդ անունը կրող մի հայուհի փայլուն էջ է գրել հայ ժողովրդի պատմության հերոսական տարեգրքում: 1126 թվականին Անի քաղաքի պաշտպանության ժամանակ աչքի է ընկել Այծյամ Անեցին, որը արհամարհելով մահը, վիրավոր վիճակում, նետերի տարափի տակ, բերդաշտարակից պարսատիկով քարեր էր նետում թշնամու վրա:

«Այծկիթ», սա թռչունի անուն է: Բայց ինչու է նա ստացել այս անունը, չէ՞ որ «այծկիթ» նշանակում է այծի կաթ կթող: Բանն այն է, որ այս թռչունը պոկ չի գալիս հոտերից: Այդ պատճառով էլ մարդկանց թվացել է, թե նա կաթ գողանալու համար է կպել հոտերին: Մինչդեռ այծկիթը այծերի շուրջը պտտվում է, որպեսզի մոծակներ, պիծակներ և ճանճեր որսա, որոնք միշտ էլ շատ են լինում անասունների շուրջը: Դրանք որսալով այծկիթը օգտակար գործ է անում:

Հայկական լեռնաշխարհի նշանավոր լեռնապարերից մեկը կոչվում է Այծպտկունք: Այն սկսվում է Մասիսների մոտից և 60 կիլոմետր երկարությամբ ձգվում արևմուտք, մինչև Մեղեդուղի հրաբխային զանգվածը: Նրա առավելագույն բարձրությունը 3174 մետր է: Այծպտկունք նշանակում է այծի պտուկ: Լեռը նման է այծի պտուկի և մեր նախնիները այն անվանել են Այծպտկունք:

Այծենակաճ: Այսպես է կոչվում այծի մազից շինված թաղիքը և այդ թաղիքից պատրաստված թիկնոցը՝ յափնջին: Այծենակաճ բառը երկու արմատ ունի՝ այծ և կաճ: Կաճ նշանակում է թաղիք: Բայց եկեք ավելի հանգամանորեն քննենք այս բառը՝ այծ են ա կաճ: Առաջին և վերջին մասերն իմացանք, իսկ արանքում կան են ու ա: Վերջինս հոդակապ է: Իսկ են կամ ենի «մուշտակ» իմաստն է ստանում՝ հենց որ նրա առջև դնում ես որևէ կենդանու անուն: Այսպես. այծենի (այծի մորթուց պատրաստված մուշտակ), գայլենի (գայլի մորթուց մուշտակ) և այլն: Դրանք ավելի գեղեցիկ են հնչում, քան այդ ամենը «դուբլյոնկա» անծանոթ բառով արտահայտելը:

Բայց դեռ շուտ է «այծ» բառին հրաժեշտ տալը: Այս արմատով բառաբարդումներ կան,

որոնք այլևայլ իմաստներ ունեն: Բերենք մի քանիսը. այծուղի (նեղ ուղի, արահետ, կածան), այծի մորուք (երկար ու ցանցառ մորուք), այծերը բռնեցին կամ այծերը եկան (բարկությունը բռնեց, խենթությունը բռնեց):

Ոչխար: Երկվանկ բառ է. ոչ խար: Ըստ Հր. Աճառյանի, փոխառյալ բառ է՝ կովկասյան լեզուներից: Դժվար է ասել, թե առաջին վանկը ինչ ձևափոխման է ենթարկվել: Ոմանք ենթադրում են, թե դա «որոճալ» բառն է: «Խար» արմատը երկու իմաստ ունի: 1. «Խար» նշանակում է այրել, դաղել, կրակ: Այդ արմատն ունի ձեզ ծանոթ խարույկը, որ կրակ է նշանակում: «Խար» արմատի այրել, դաղել, կրակ իմաստը պահում են խարազանել (դատապարտել, քննադատել), խարակել (խեցեղեն ամանները տաքացնելով ախտահանել), խարամ (քարածխի այրման հետևանքով ընտացվող մնացորդը), խարանել (շիկացած մետաղով այրել, դաղել և այլն): Այս «խար» արմատն ունի իր երկրորդ ձևը՝ «խոր», որը առանձին չի գործածվում, այլ հանդես է գալիս բառաբարդումների մեջ (օրինակ՝ խորովել): 2. «Խար» նաև նշանակում է անասուններին տրվող կեր, խոտ, չոր խոտ: «Ոչխար» բառի երկրորդ վանկը հենց այս «խարն» է և լեզվաբաններից ոմանք «ոչխար» բառը ստուգաբանում են այսպես՝ խոտ որոճող անասուն:

Հայերենի «խար» արմատը (խոտ իմաստով) միայն ոչխար բառի մեջ չէ, որ պահպանվել է: Պարխար անունով հայկական մի լեռ կա: Փորձենք ստուգաբանել այս բառը: Կազմված է երկու արմատից՝ պար, խար: «Խար»-ն այստեղ նշանակում է խոտ: Ի՞նչ ստացվեց, խոտի պա՞ր: Չէ՛, մեր նախնիները այդպիսի լեզվական անհեթեթություններ թույլ չեն տվել: Նրանց խոսքի մեջ փայլատակել են բառերի նրբերանգները: Հիմա անդրադառնանք «պար»-ին: Ձեզնից հազիվ թե որևէ մեկը պարել չիմանա: «Պար» հենց առաջին հերթին պարել է նշանակում: Բայց ոչ միայն դա: «Պար» նշանակում է շուրջ, շրջան, շարք, նաև դուրս (կամ դուրս ընկած, ինչպես մարդն է պարելու ժամանակ ձեռքերը վեր բարձրացնում): Մտաբերենք մի քանի բառեր «պար» արմատով. պարագայել (շըրջագայել, ման գալ), պարագիծ (դրսի գիծ, շրջանագիծ), պարագնաց (շրջմոլիկ, թափառական), պարակալ (պատուհանի դրսի երեսակալը, շրջանակը), պարականոն (անկանոն, կանոնից դուրս), պարանոց (վիզ, մարդու մարմնի դուրս ցցված մասը), պարապ (աշխատանքից կամ որևէ զբաղմունքից դուրս գտնվող): Բացի այդ, հայկական լեռնաշխարհի լեռնաշղթաներից մեկը կոչվում է Հայկական պար, որ պարզապես նշանակում է հայկական լեռնաշար, լեռների շարք: Հայկական ՍՍՀ Սպիտակի շրջանում մի գյուղ կա, որի անունն է Մեծ Պարնի: Այս տեղանվան մեջ «պարնի» նշանակում է դուրս ցցված ելուստ կամ ժայռ: Վերադառնանք «Պարխար» բառին: Այստեղ «պար» նշանակում է շրջան, որից կարող ենք ստուգաբանել, որ «պարխար» նշանակում է խոտի շրջան, խոտավետ վայր: Տեսնու՞մ եք, թե ոչխար բառի «խար» արմատն ուր տարավ մեզ:

Ի՞նչ հոմանիշներ ունի «ոչխար» բառը. խաշն,առն, գառ, մաքի, խոյ, օդի: «Խաշն» նշանակում է և՛ ոչխար, և՛ ոչխարի կամ այծի հոտ, «առն»՝ վայրի արու ոչխար, գառ (գառնուկ), նորածին ոչխար, ոչխարի ձագ, «մաքի»՝ էգ ոչխար, «խոյ»՝ արու ոչխար: Սրանցից «խոյը» մտել է բազմաթիվ բառաբարդումների մեջ և ստեղծել հայերեն գեղեցիկ բառերի մի ամբողջ շարք. խոյանք (բուռն ընթացք, թռիչք), խոյասլաց (արշավասույր, վայրընթաց, շեշտակի թռիչք), խոյահարել (վայրընթաց թռչել նպատակակետին հարվածելու համար) և այլն: Հրաշալի է «խոյակ»-ը, որ նշանակում է սյունագլուխ: Հայ վարպետներն ընտիր խոյակներ են կերտել: Այդպիսի խոյակներ շատ կան Երևանի Լենինի հրապարակը եզրող ճարտարապետական փառահեղ կառույցներում:

Մեր նախնիները խոյի նմանությամբ ոչ միայն խոյանք, խոյահարել ու խոյակ բառերն են ստեղծել, այլև «խոյ» են անվանել ռազմական գործիքներից մեկը: Դա պաշարված քաղաքի բերդապարիսպները քանդելու սարք է, որի երկար ու հաստ և խոյի գլխի նմանվող գերանով հարվածում ու խարխլում էին պարիսպները:

«Խոյ» է կոչվել նաև հին Հայաստանի քաղաքներից մեկը:

Մի երկու հավելում: Այծերի և ոչխարների խումբը կոչվում է հոտ: Ձեզանից շատերը շփոթում և հոտ են անվանում կովերի ու եզների խմբին: Տավարի հոտը կոչվում է նախիր, այդ նախիրը պահողը՝ նախրապան: Այծերի և ոչխարների հոտը պահողը կոչվում է հովիվ, բայց եթե նա միայն այծերի հոտն է պահում՝ կոչվում է այծարած, իսկ եթե միայն ոչխարների հոտն է պահում, կոչվում է խաշնարած:

Շատ լավ կլիներ, եթե դուք մտապահեիք նաև այծի ու ոչխարի ձայների անվանումները՝ մայուն, մկկոց, բռբռյուն, պապաչյուն, կկմկյուն:

# ԾՈՒՅՑԻ ԼԱՊՏԵՐԱՅԻ ՄԵՋ

ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ



Լապտերայան մեջ է բույնը նրանց,
Այան ճիշտ կենտրոնում կա փոքրիկ անցք:

Այդ անցքով են միշտ մտնում-ելնում
Ծնծղուկից փոքր երկու թռչուն:

Փոքրիկ կտուցով մի բան առնում
Եվ իսկույն նորից ետ են դառնում:
Հայրը գնում է,
Մայրն է գալիս,
Մայրը գնում է,
Հայրն է գալիս:

Մինչ մութը չընկնի՝ գիշեր չգա,
Հանգիստ մի վայրկյան նրանց չկա:

Ձագերը ճչում, անվերջ ճչում,
Պահանջում են ու հա պահանջում:

Եվ ծնողները նորից, նորից,
Սնունդ են բերում դեսից-դենից:

Էլ ինչեր ասես, որ չեն անում.
Նայում եմ հեռվից ու զարմանում,

Թե ինչ գնով է ամեն մի ճուտ
Մեծանում քիչ-քիչ, դառնում թռչուն:

... Եվ մարդկանց մեջ էլ պատկերն է նույն,
Չկա գրեթե տարբերություն:
Եվ ծնողներն էլ մեր հոգատար,
Թռչունների պես այս անդադար,
Մոռացած իրենց, անվերջ վազում,
Բերում են այն, ինչ մենք ենք ուզում:
Հայրը գնում է,
Մայրն է գալիս,
Մայրը գնում է,
Հայրն է գալիս:






«Սաթենիկ Թոփուզյանի «Հմուտ ձեռքեր» խմբակը», «Սաթենիկ Թոփուզյանի տիկնիկները»... Այս արտահայտությունները մեր թանգարանում ամեն օր հնչում են այնքան անգամ, որքան անգամ որ պատմվում է Երևանի մանկական պատկերասրահի հիմնադրման ու գործունեության մասին, մշտական ցուցադրանքում տեղ գտած ցուցանմուշների ու նրանց փոքրիկ հեղինակների մասին:

Այցելուները զարմացած ու հիացած կանգ են առնում այն ցուցափեղկերի առաջ, որտեղ ցուցադրվում են «Գնչուները», «Մեքսիկացիները», «Մոնղոլները»... Ահա դանդաղ ընթացող, ծածկը կարկատած խարխուլ սայլը, որին ապավինել է գնչուների թափառախումբը: Աչքերիդ առջև ծավալվում է այդ ժողովրդի հախուռն կյանքը՝ զերծ ամեն մի պայմանականությունից:

Իսկ մի փոքր այն կողմ պարում են մեքսիկացիները, հնգեպարար երաժշտությունն ը կլանել է զույգին: Քիչ հեռու նստած են մոնղոլները, ազգային երաժշտության միալար նվագից կարծես նիրհում են նրանք:

«Ցլամարտ»— կատաղած ցուլը պատրաստվում է հարվածի, նրա աչքերը արնագույն են, ինչպես ցլամարտիկի թիկնոցը: Չկա ամբոխ, բայց միանգամայն ամբողջական է տեսարանը: Ցլամարտիկի դեմքըն ու կեցվածքը ասում են, որ օթյակներից մոլեգին ամբոխը բղավում է, քաջալերում, հուսադրում:

Արդեն 20 տարի է, ինչ Երևանի № 172 դպրոցի երեխաների համար իրենց ձեռքի աշխատանքի արվեստանոցը հրաշալիքների աշխարհ է, հեքիաթների զարդատուփ:

Ծանոթանանք նրանց ղեկավարի՝ այդ գեղեցիկ հոգու տեր կնոջ հետ. ծնվել է Թուրքիայում, կրթությունն ստացել է Հալեպում, ապա՝ Բեյրութում: Մասնագիտացել է կիրառական արվեստի մեջ: Նրա առաջին ցուցահանդեսը բացվել է Մխիթարյան միաբանության Բեյրութի քոլեջում: 1957 թ. հայրենադարձվել են, հաստատվել Երևանում: Երեխաները սկսել են հաճախել դպրոց: Տիկին Սաթենիկը որպես ուշադիր ծնող, հաճախ է այցելել դպրոց, իմացել ամեն անցուդարձ, ճանաչել բոլորին: Ու մի օր էլ առաջարկել է դպրոցի տնօրենին.

— Ես ուզում եմ աշխատել երեխաների հետ միանգամայն անվարձահատույց, ուզում եմ սովորեցնել նրանց իմ գիտեցածը, կարծում եմ, որ օգ-







տակար կլինեմ նրանց:

Սկսվում են պարապմունքները: Երեխաները մեծագույն հափշտակությամբ ու սիրով են հաճախում այդ արտաժամյա դասերին: Ուսուցչուհին իր առջև դնում է հստակ նպատակ. դաստիարակել փոքրիկներին համակողմանիորեն, հաղորդակից դարձնել արվեստի գաղտնիքներին, սովորեցնել գեղեցկացնել շրջապատը, ամեն տեղ փնտրել գեղեցիկը:

Աշակերտները զարմանքով են դիտում, թե ամենաաննշան նյութն անգամ ինչպես է շունչ ու հոգի առնում. ուսուցչուհու ձեռքերում: Աշխատասենյակը լցվում է ամեն տեսակ «անպետք» նյութերով, գործվածքեղենի կտորտանք, զանազան թափոններ, գունավոր քար ու խիճ, խեցիներ, եգիպտացորենի կողրեր, եղևնու կոներ, թելեր, պարաններ, փայտ, բույսի չոր ցողուններ, կոճակներ, հուլունքներ և այլն, և այլն:

Երեխաները սովորում են աշխատել փայտի վրա, փորագրել, գունավորել, հղկել, ապա կարել զգեստներ, ասեղնագործել:

— Իմ գործն է յուրաքանչյուր երեխայի մեջ հայտնաբերել գեղագիտական հակումներ, զարգացնել նրանց մեջ բարձր ճաշակ, չափի զգացում, ասելիքի հստակություն, ազնվություն, չէ՞ որ նրանք վաղվա քաղաքացիներն են, աղջիկները պետք է դառնան լավ մայրեր: Դպրոցը կոչված չէ միայն չոր գիտելիքներ հաղորդելու, պետք է երեխային կապել կյանքին ամենակենսալի թելերով,— ասում է վաստակաշատ ուսուցչուհին:

Ս. Թոփուզյանը շատ է ճանապարհորդում: Շրջագայում է աշխարհի բազմաթիվ երկրներում, դիտում և ուսումնասիրում տարբեր ազգերի նիստուկացը և վարքուբարքը, կենցաղն ու արվեստը: Իսկ վերադարձին այդ ամենը իրեն հատուկ ոգևորությամբ հաղորդում է իր սաներին, պատմում իր տեսածների մասին, ցուցադրում իր հետ բերած վերատպությունները ու լուսապատկերները: Երեխաների հետ ունկնդրում են տվյալ երկրի ազգային երաժշտության նմուշներից, որը նույնպես սնում է իր սաների երևակայությունը և այդ թեմաներով ստեղծագործելու մղում տալիս:

Այդպես են ծնվել տիկնիկների հայտնի շարքերը. «Գնչուներ», «Հնդիկներ», «Վիետնամցիներ», «Նեգրեր», «Ճապոնացիներ»: Հատուկ ուշադրություն է դարձվում հայկական թեմաներին: Խմբակի 20-ամյակին նվիրված ցուցահանդեսում աչքի էին ընկնում հատկապես «Երևանի ղանթարը», «Սուսերով պարը», «Ջանգյուլումը», «Վարդանանց պատերազմը» և այլն:

Երեխաները ստեղծագործում են նաև հայ, ռուս, արտասահմանյան դասական գրողների ստեղծագործությունների թեմաներով: Դուք Թումանյանի, Մաթևոսյանի ու Քաջ Նազարի կողքին կարող եք տեսնել Գոգոլի, Տուրգենևի, Դոստոևսկու հերոսներին:

Խիստ ուշագրավ է «19-րդ դար» անվանվող շարքը. փողոց, հնաոճ լապտերներ, ձիակառք, հնացող ձիեր ու բարձերին հենված գեղանի կանայք և տղամարդիկ...

Մի խոսքով թոփուզյանական աշխարհ: Դիտում ես այդ ամենը, և հասկանալի է դառնում այն հսկայական հաջողությունը, որ միշտ ուղեկցում է Ս. Թոփուզյանի սաների աշխատանքների ցուցահանդեսներին, լինեն դրանք Հայաստանում թե Միության մյուս հանրապետություններում, Գերմանիայում թե Բուլղարիայում, ԱՄՆ-ում թե Ֆրանսիայում:

**ՄԱՐԳԱՐԻՏ ԲԱԼԱՍԱՆՅԱՆ**

# ԼՅՈՎԿԱՅԻ ՏՈՒՆԸ



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Գործն է անմահ, լավ իմացեք,
Որ խոսվում է դարեդար,
Երնեկ նրան, որ իր գործով
Կապրի անվերջ, անդադար:

ՀՈՎՀ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

Ջալալօղլի:

Այսպես է կոչվել իմ ծննդավայրը նախկինում:

Թե ինչո՞ւ Ջալալօղլի, ոչ ոք ստույգ չգիտե: Հնաբնակներից ոմանք պատմում են, որ այդպես է կոչվել Ղարաբաղի կաթողիկոս Սարգսի Հասան Ջալալյանի եղբայր Դավիթ Հասան Ջալալյանի անունով, որը, ինկապես, եղել է մեր բնակավայրի առաջին բնակիչներից: Ոմանք էլ պնդում են, որ այդպես է կոչվել, որովհետև Բորչալուի գավառի ադրբեջանցիները այստեղ ամառային արոտավայր են ունեցել և նրանցից մեկի՝ Ջալալի որդու անունով կոչել են Ջալալօղլի:

Ինչ որ է...

Ջալալօղլու գլխավոր փողոցը կոչվել է Միլիոննայա, թե ինչո՞ւ, այդ էլ ոչ ոք

չգիտե, ենթադրում են, որ այստեղ ապրել են հարուստները, որոնք Թիֆլիսում պալատներ են ունեցել, իսկ այստեղ՝ գեղեցիկ ամառանոցներ, բոլորն էլ Միլիոննայա փողոցում: Միլիոննայա փողոցը սկսվում է անտառի փեշից: Փողոցի վերևի մասը կոչվել է Սլաբոդկա, ինչո՞ւ Սլաբոդկա, այս արդեն հայտնի է. այստեղ ապրել են մեր քաղաքի ռուս բնակիչները: Մեր քաղաքը ինտերնացիոնալ է, երեք թաղամաս է ունեցել՝ հայկական, ռուսական և ադրբեջանական, հիմա, իհարկե, այդպիսի բաժանում չկա, ապրում են խառը, բայց շատ համերաշխ:

Այժմ, ինչպես քաղաքը, այնպես էլ Միլիոննայա փողոցը, կրում են բոցաշունչ հեղափոխական Շահումյանի անունը: Բայց ես այդ մասին չէ, որ ուզում եմ պատմել: Ուզում եմ պատմել մի մարդու մասին, որը ո՛չ հերոս է, ո՛չ անվանի գիտնական, ո՛չ էլ գրող, բայց նրա անունը ապրում է մեր քաղաքում:

Շահումյան փողոցի այն մասում, որտեղ Սլաբոդկան էր սկսվում, կա մի փոքրիկ փայտաշեն տնակ, այնքան փոքրիկ, որ անցորդները չեն էլ նկատում, խարխլվել, կորել է կանաչի մեջ:

Բայց ոչ ոք այդ տունը քանդել չի ուզում. «Լյովկայի տուն» է կոչվում այն: Հենց այդ Լյովկայի մասին էլ ուզում եմ պատմել:

Ո՞վ էր Լյովկան...

Այս մասին ինձ պատմել է մայրս:

Մի անգամ գնում էինք անտառ, անցնում էինք Շահումյան փողոցով, չգիտեմ ինչու, նկատեցի փոքրիկ տունը և մորս հարցրի.

— Ո՞ւմ տունն է:

Մայրս ասաց, որ Լյովկայի տունն է, և ահա թե ինչ պատմեց:

Շարքային միլիցիոներ է եղել ռուս Լյովկան, ազնիվ ու շիտակ, բայց շատ խիստ, այնքան խիստ, որ երբ փողոցով անցնելիս է եղել, բոլորը մի կողմ են քաշվել: Ավանդական սուլիչը վզից կախ՝ շրջել է քաղաքում, թույլ չի տվել ոչ մի անկարգություն:

Պատերազմի տարիներն էին:

Ամեն ինչի համար հերթ էր, և Լյովկան միշտ կարգավորել է հերթերը: Երբ որևէ տեղ վեճ է եղել, Լյովկային են կանչել: Պատմում են, որ բավական էր հեռվից երևար նրա բարձր հասակն ու շիկահեր գլուխը, բոլորը սսկվում էին, լռում:

Ի՞նչ ուժ է եղել նրա ուժը, մայրս չի կարողանում բացատրել: Բայց մի դեպք շատ լավ է հիշում: Շատ փոքր է եղել ինքը՝ մայրս, և տատիկիս հետ փողոցով գնալիս անկարգություն է արել, տատիկս էլ սպառնացել է, թե Լյովկային կկանչի: Հենց այդ ժամանակ երևացել է Լյովկան, մայրս սաստիկ վախեցել է և վախից հիվանդացել: Այդ մասին իմացել է Լյովկան և եկել է տատիկիս տուն: Մորս համար բերել է մի կենդանի սկյուռիկ ու ասել, որ անտառից է բռնել, երբ հետևելիս է եղել մի հանցագործի: Սկյուռիկը նվիրում է մորս և համոզում, որ ինքը չար քեռի չէ, որ ինքը միայն անարդար գործը չի սիրում, իսկ մանուկներին սիրում է շատ:

Հետագայում պարզվում է, որ Լյովկան անտառում բռնել էր մի վտանգավոր հանցագործի, որի համար «Կարմիր աստղի» շքանշան էր ստացել, բայց այդ մասին մերոնց ոչինչ չէր ասել:

Պատմում են նաև, որ Լյովկան իր աշխատանքը վերջացնելուց հետո օգնում էր այն ընտանիքներին, որոնց տղամարդիկ ռազմաճակատում էին: Լեգենդ է դարձել մի այսպիսի դեպք:

Երկու փոքրիկ աղջիկ, տասներկու-տասներեք տարեկան, անտառից փայտ են բերելիս լինում, անտառապահը բռնում է նրանց ու խլում փայտը: Լյովկան իմանում է: Հաջորդ օրը ինքը գնում է անտառ, փայտ բերում նրանց համար, ջարդում ու տեղավորում: Ստեփանավանցիները հիշում են նաև ժողովրդի մեջ պատերազմի տարիներին ստեղծված այն լեգենդը, թե իբր, եթե Լյովկան իր ավանդական սուլիչը փչեր, օդում կկանգներ նույնիսկ թշնամու ինքնաթիռը:

Լյովկան մեր համաքաղաքացիների հիշողության մեջ մնացել է որպես կարգապահության, ազնվության, բարձր պատասխանատվության խորհրդանիշ:

Մենք դասարանցիներով որոշել ենք խնդրել քաղաքի ղեկավարներին թույլ տալ, որ Լյովկայի տան պատին փակցնենք հուշատախտակ՝ «Այստեղ ապրել է միլիցիոներ Լյովկան»:

Դե, թող ապրի գործը արդար,
Ու թող խոսվի դարեդար:

**ՀԱՅԿ ՃՇՄԱՐԻՏՅԱՆ**
Ստեփանավանի Ստ. Շահումյանի
**անվ. № 1 դպրոցի 10-րդ դաս. աշ.**

ԷԴՎԱՐԴ ՍԱՐԳՍՅԱՆ

# ՆՐԱՆՑ ՍԻՐՏԸ ԼԵՌՆԵՐՈՒՄ Է

## 14. «ԿԱՐՍՏԱՅԻՆ ՔԱՐԱՆՁԱ՞Վ... ՀԱՅԱՍՏԱՆՈՒ՞Մ»

Տարիներ շարունակ մեր հայտնաբերած ու հետազոտած քարանձավները բոլորն էլ կամ հրաբխային ծագում ունեին կամ էլ արհեստական էին: Ճիշտ է, գեղեցիկ էին, ինչպես որ գեղեցիկ են քարայրներն առհասարակ: Բայց և ամեն անգամ քարայրներ մտնելիս մենք երազում էինք այն օրը, երբ կգտնենք կարստային քարանձավներ, այսինքն կրաքարերի և այլ լուծելի ապարների մեջ առաջացած վիթխարի անձավներ, որտեղ լինում են գեղեցիկ շիթաքարեր, կաթիլաքարեր և բնության այլ զարմանահրաշ ստեղծագործություններ, որոնք մենք միայն գրքերում էինք տեսել:

Որոնում էինք կարստային քարանձավներ, թեև մեզ հայտնի էր երկրաբանների կարծիքը. «Սովետական Հայաստանում կարստային քարայրներ չեն եղել ու չկան,— ասում էին ու հիմնավորում, —Հեռավոր ժամանակներում (հարյուր հազարավոր ու միլիոնավոր տարիներ առաջ), երբ աշխարհի շատ վայրերում կրաքարերի մեջ թափանցող ջրերը տիվ ու գիշեր փորում էին ապագա կարստային անձավները, Հայաստանի կրաքարերի միջով ջրեր չէին հոսում՝ Հայաստանն անջուր էր: Դրա համար էլ կարստային այրեր չառաջացան»:

Սա գիտական բացատրությունն էր, որն ամեն անգամ մատուցում էին մեզ թե՛ գրույցների ձևով ու թե՛ գրքերի էջերից, և առաջին հերթին՝ «Հայկական ՍՍՀ երկրաբանություն» հեղինակավոր բազմահատորյակից: Բայց մեր խմբում հիմնականում ֆիզիկոսներ ու քիմիկոսներ էին, մարդիկ, ովքեր ամեն օր հաստատում կամ ժխտում են գիտական աշխարհում հաստատված տեսակետներ և դրա համար էլ թերահավատ են զանազան ավարտուն համարվող տեսությունների հանդեպ:

Եվ ահա, մեկ օր էլ մեր անխոնջ Կարենը հայտնեց, որ լսել է մի խոր անցքի մասին, որը գտնվում է Իջևանի շրջանում: Թե դա ինչ անցք էր, դեռ ոչ ոք չգիտեր, բայց հուզմունքն անմիջապես պաշարեց մեզ: Գարնանը, մինչ մենք մտածում էինք ստուգել Կարենի լսած տեղեկությունը, ինքը՝ Կարենը բերեց մի նոր լուր. անցքն իսկապես գոյություն ունի: Գտնվում է Համզա լեռան գագաթին և կոչվում է Ջրնգան: Մի տեղացի տղա նրան ցույց է տվել տեղը, և Կարենն իր ձեռքով քար է գցել նրա մեջ:

—Գցած քարը երկար ժամանակ զըրընգալով իջնում է երկրի խորքը, դրա համար էլ այդ անցքի անունը դրել են Ջրնգան,— ոգևորված պատմեց նա:

Տասնյոթ հոգուց բաղկացած մեր խումբը ծանր բեռնավորված մեքենայով դուրս եկավ Երևանից: Երբ Իջևան հասանք, մութ էր ու անձրև էր գալիս: Մի կերպ մեքենայով բարձրացանք Գանձաքար գյուղը: Այստեղից արդեն մեքենան չէր կարող գնալ՝ անանցանելի ցեխ էր ու ակնակիր խավար: Հիմա մեքենայից իջել ենք ու անձրևի և ցեխի մեջ կոլոլված մըտածում ենք, թե ինչ անենք, մեկ էլ որտեղից որտեղ մի բեռնատար մեքենա կանգնեց կողքներիս ու վարորդը ցած թռավ:

— Ուրեմն Աբրահամը մեռա՞ծ է, որ

դուք ցեխի մեջ կանգնել եք,— կանչեց նա և աղջիկներին հավաքելով տարավ իրենց տուն, իսկ մեզ՝ առաջնորդեց գյուղի մանկապարտեզը:

— Ներող կլինեք, տղե՛րք ջան, որ ձեզ էլ չեմ կարող տուն տանել,— ասաց նա ու բարի գիշեր մաղթելով գնաց:

Առավոտյան երբ աչքերս բացեցինք, պայծառ, տաք օր էր, իսկապես մեր բախտից: Ու մինչ մեր նոր ծանոթը մեքենա էր որոնում, որ մեզ Զրնգանի մոտ հասցըներ, մենք դուրս եկանք գյուղամեջ և խառնվեցինք քարերի վրա արևկող անող ծերունիներին:

— Տղե՛րք ջան, երկրաբան ե՞ք,—հարցրեց մեկը:

— Չէ՛, քեռի՛, քարանձավ մտնողներ ենք,— պատասխանեցինք մենք:

— Մեր սարերում քարանձավ չկա,— հոգատարությամբ բացատրեց ծերունին:

— Բա Զրնգանն ի՞նչ է,— հարցրինք:

— Զրնգանը՞,— ծոր տվեց ծերունին,— չէ՛, երեխե՛ք ջան, Զրնգանից հեռո՛ւ մնացեք, նա օձերի ապրելու տեղն է: Այնտեղից նրանք տարին մի անգամ դուրս են գալիս ու իրենց թագավորի ետևից շարված կռիվ են գնում Մասիսի օձերի վրա: Չգնաք, տղե՛րք ջան, մեղք եք, ջահել եք:

Ծերունիների ասածը ավելի բորբոքեց մեր հետաքրքրությունը Զրնգանի հանդեպ: Իսկ մինչ այս, մինչ այն, Աբրահամը մեքենայով եկավ և մենք արշավախմբի գույքը բարձելով՝ գյուղից դուրս եկանք:

Ոլոր-մոլոր ճանապարհներով բարձրացանք լեռները, հետո մեքենայից իջանք ու ձմեռվա քնից զարթնող անտառի միջով բարձրացանք Համզա լեռան գագաթը: Մի ժամվա չափ որ քայլեցինք, Կարենը կանչեց:

— Իմ ետևի՜ց եկեք...

Քիչ հետո նա մեզ կանգնեցրեց մի մեծ ծառի տակ ու ասաց.

— Սա էլ ձեզ Զրնգանը:

Մենք շփոթվեցինք. ծառի տակ հազիվ երևացող սալ քարերի արանքում մի փոքր ճեղք էր երևում, այնքան աննկատ, որ մոտով անցնելիս ուշադրության չէիր արժանացնի: Ճեղքի խորությունն ասես հազիվ մի կես մետր էր, բայց վրան կաղնի ծառ էր գցած, որ մարդ կամ անասուն չընկնի փոսը:

Մենք անցքից քիչ հեռու ցած դրինք մեր ծանր ուսապարկերն ու հերթապահներին հանձնարարելով, որ ճաշ եփեն, պարանները վերցրած մոտեցանք խորհըրդավոր անցքին: Ծառը հեռացրինք ու մի մեծ քար գտնելով գցեցինք անցքի երախը: Քարը զրնգալով երկար ժամանակ ճամփորդում էր գետնի տակ, մինչև որ ձայնը կամաց-կամաց մարեց: Երբ մենք արդեն հավատացած էինք, որ քարըն արդեն վաղուց հասել է հատակին, հանկարծ երկրի խորքից դղրդոց լսվեց: Մենք իրար երես նայեցինք: Գյուղացիները ասել էին, թե պարաններ են կախել ու չափել խորությունը՝ յոթանասուն մետրր էր:

Որոշեցինք անմիջապես սկսել հետազոտությունը: Ես պարանով կապվեցի, խցկվեցի ճեղքն ու մի քանի մետր իջա: Անսպասելիորեն անկանոն ճեղքը լայնացավ ու դարձավ կլոր վիհ: Ես ոտքերով ու մեջքով հենվեցի թաց պատերին ու ցած նետեցի վառվող թերթը: Ջահը պտտվելով սուզվեց խավարի մեջ, մթությունից ոչինչ չկորզելով, կարծես թե վիհը ո՛չ պատեր ուներ, ո՛չ հատակ: Բայց գոնե հուշեց, որ ներքևում թունավոր գազեր չկան, որ ջահը հանգցնեին:

Հետո ես ցած նետեցի մի քար, որը վերևից պարանով իջեցրին ինձ մոտ: Քարը զրնգալով թռավ ու ներքևում անսպասելիորեն չլմփաց ջրի մեջ: Ուրեմն վիհի հատակին լիճ է և տա աստված, որ խորը չլինի, թե չէ մեկ էլ տեսար վերևից խարխափելով իջանք ու սուզվեցինք նրա մեջ:

Որոշեցինք չափել վիհի խորությունն ու ծանր քար կապած պարանի ծայրը սուզեցինք անդունդը: Քարն իջավ «ընդամենը» քառասուն մետր:

Հետազոտությունն ավարտելուց հետո, տղաներն ինձ ցեխակոլոլ ու մրսած դուրս քաշեցին վիհից: Հենց որ գլուխս ճեղքից դուրս հանեցի, հանկարծ երկինքը պատըռվեց ու տեղատարափ անձրև սկսեց:

Առավոտյան արևի առաջին շողերի հետ արդեն ոտքի վրա էինք: Վիհի երախի մոտ կապկպեցինք բոլոր անհրաժեշտ պարանները: Անծանոթ աչքի համար դրանք խճճված սարդոստայն են հիշեցնում:

— Էդի՛կ, թող առաջ մենք իջնենք, որպեսզի եթե մեզ մի բան պատահի, գիտենանք, որ մեզ հանող կա:

— Շա՛տ լավ,— համաձայնեցի ես ու խցկվեցի իմ երեկվա տեղը, որպեսզի վայրէջքը կարգավորեմ: Դավիթն իջավ իմ ոտքերի արանքով ու կախվեց ցած: Քիչ հետո արդեն խավարի միջից գալիս

էր ատամների մեջ սեղմած նրա սուլիչի ձայնը: Մի սուլոցը նշանակում էր՝ «կանգնեցրեք», երկուսը՝ «իջեցրեք», երեքը՝ «բարձրացրեք»: Տղաները դանդաղ իջեցնում էին պարանը և իմ ներքևում Դավթի լապտերը պտտվելով ու կայծկլտալով ավելի ու ավելի էր հեռանում:

— Հասա՜,— անդունդի խորքից լսվեց Դավթի գնծալի կանչը, իսկ հաջորդ ակնթարթին կրկին ինձ հասավ հուզմունքից խեղդված նրա ձայնը.

— Թաղվել եմ ցեխի մե՞ջ:

Մի քանի տագնապալի րոպե հետո խավարում թպրտացող լապտերը մի կողմ քաշվեց ու լսվեց Դավթի ուրախացած ձայնը.

— Ցեխից ազատվեցի՜:

Իսկ քիչ հետո մի այնպիսի նորություն հայտնեց, որից բոլորիս շունչը բռնվեց.

— Ջրնգանը շարունակվում է. գնա՞մ նայեմ:

— Գնա՛, բայց շատ չհեռանաս,— կանչեցի ես ու մինչև նա կպատրաստվեր հեռանալ, վիհի հատակից սկսեցի վեր բարձրացնել ավելորդ դարձած պարանները:

Երբ ցածում վերջապես Դավթի լապտերն անհետացավ անձավի խորքերում, վերևից սկսեց իջնել Արտոն, հետը տանելով դաշտային հեռախոսը, որը համալսարանի ռազմական ամբիոնն էր տրամադրել մեզ:

Արտոն իջավ դանդաղ ու հանդիսավոր, ասես շքերթի էր դուրս եկել: Ի՞նչ անես, անդունդների վրա ամեն մարդ իրեն յուրովի է պահում: Նրա իջնելուց հինգ րոպե հետո վերևում լսվեց հեռախոսի ծլնգոցն ու Արտոյի հանդիսավոր ձայնը. «Անտա՛ռ, Անտա՛ռ, ես Ջրնգանն եմ, հասա վիհի հատակին, Դավթի ետևից շարունակում եմ հետազոտությունը, թեք ճեղքով»: Ու գնաց: Լավ է, որ արդեն երկուսով էին: Երկու հոգին հանգիստ կարող էին ոտք դնել այնտեղ, որտեղ երբեք արև չէր ընկել ու որտեղ պատերը առաջին անգամ լույս տեսան, իսկ լռությունը խախտում էր միայն առվակի քչքչոցն ու հեռախոսի անհամբեր զանգը, որը անընդհատ նորություններ էր պահանջում:

Արտոյի իջնելուց քիչ հետո Դավթին վեր բարձրացրինք: Հիմա արդեն իջնելու հերթը իմն էր ու ես պարանի վրա հոլի պես պտտվելով սկսեցի իջնել երկրի խորքը: Վիհի կլոր անցքը գնալով լայնանում էր, իսկ լապտերի ցոլքերի տակ երևում էին կավացեխով պատած հարթ, ասես հղկած պատերը: Պատերից ջուր էր ծորում: Ասես ոչ թե վիհ, այլ դժոխք էի իջնում: Եթե իմ փոխարեն Դանթեն լիներ պարանից կախված, դժոխքի փոխարեն Ջրնգանը կնկարագրեր:

Վերջապես հասա վիհի հատակին ու մինչև ծնկներս խրվեցի ցեխի մեջ: Մի կերպ դուրս եկա, պարաններն արձակեցի ու հետևեցի առվակի ընթացքին: Քիչ հետո զառիթափով ցած գայթելով ընկա մի դահլիճ: Սրբատաշ պատեր, գմբեթաձև առաստաղ և սրահի կենտրոնում պլպլացող մենավոր մի մոմ: Սթափվելով հասկացա, որ դա ոչ թե եկեղեցի է, այլ Արտոյի հերթական կատակը:

Դահլիճից ճանապարհը շարունակեցի առվակի միջով, որտեղից արդեն անցել էին Դավիթն ու Արտոն: Առանց ուղեկցի մնալու դեպքում էլ առվին ապավինելով գետնի տակ չեք մոլորվի:

Վերջապես դուրս եկա մի ընդարձակ տարածություն՝ հսկա մի դահլիճ, որին բեկորները բաժանել էին մի քանի առանձին դահլիճների: Այստեղ արդեն ցեխը համարյա անանցանելի էր, ծանր ու մածուցիկ: Ես ոտքերս մի կերպ ցեխից դուրս քաշելով դանդաղ առաջ շարժվեցի:

Տեսա Արտոյին: Նա հմայված կանգնած էր դահլիճի պատի տակ ու առանց հայացքը կտրելու նայում էր: Նայեցի նույն ուղղությամբ ու զարմանքից ճչացի: Պատը ամբողջովին ծածկված էր կարմիր, կապույտ, սպիտակ քարե գոյացությունների «ջրվեժներով», իսկ առաստաղից թրերի նման կախված էին ամենախսկական շիթաքարեր: Ինչքա՜ն շատ էին նրանք ու ո՜նց էր լույսը դողում նրանց վրա: Ահա նրանք՝ հայկական առաջին շիթաքարերը, որ քանի՜ տարի որոնում էինք մենք: Դավթին նույնիսկ թվացել էր, թե դրանք սառցալուլաներ են, ու նա մեկի ծայրը կոտրելով գցել էր բերանը:

Ուշքի գալով, մենք դահլիճի թեք հատակով իջանք ցած: Գտանք կզաքիսի երկու կմախք, գանգերը արդեն պատվել էին աղի նուրբ շերտով: Շատ վաղուց էին ընկել այդ թակարդ-վիհը:

Առվակի ընթացքին հետևելով հասանք դահլիճի ծայրը: Այստեղ վիթխարի ցեխաշիթը ինչ-որ հրաշքով կանգնել մնացել էր, բայց ամեն վայրկյան կարող էր գահավիժելով ծածկել մեզ: Առվակի ձայնն էլ կտրվեց: Ես կռացա ու ցած նայեցի.

կավացեխի մեջ բացված փոքրիկ անցքով առվակը ցած էր թափվում: Պարզ լսվում էր մեր ոտքերի տակ խշշացող ջրվեժի ձայնը, որը մեզանից ցած էր մի տասը-տասնհինգ մետր: Ավա՜ղ, այնտեղ ուր մտնում էր ջուրը, մարդու համար տեղ չկար:

Մինչ մենք ուսումնասիրում էինք վիհի դահլիճները ու անցումները, անհամբեր հեռախոսը անընդհատ զանգում էր: Աղջիկները, որոնք չէին իջնելու վիհը, շատ էին խնդրում պատմել վիհի մասին: Ես հեռախոսափողը վերցրի ու դահլիճի մեջ շրջելով սկսեցի մեկ առ մեկ պատմել տեսածս: Վերևում մնացածները շունչները պահած լսում էին այդ անօրինակ ռեպորտաժը:

Հետո ես ու Արամը պատրաստվեցինք լուսանկարել շիթաքարերը, որպեսզի ապացույց ունենանք: Բայց, ա՜յ քեզ փորձանք, լուսավորող սարքերը փչացան: Այն ժամանակ մենք դեռ չգիտեինք, որ խոնավ քարանձավում դա սովորական բան է: Ի՞նչ անենք: Հնարը գտանք: Ես ապարատը անշարժ պահում էի, իսկ Արտոն ձեռքի լապտերով հերթով լուսավորում էր շիթաքարերը ու հատ-հատ տպում ֆոտոժապավենի վրա: Մեր փորձը հաջող անցավ, և այդ օրվանից որպես հիշատակ մնացին շիթաքարերի լուսանկարները և նրանց վրա՝ Արտոյի ստվերը:

Այնուհետև անցանք չափագրությանը: Երբ մայրամուտին յոթ հոգիս էլ դուրս եկանք Զրնգանից, տեսանք վիհի մոտ նստած մի խումբ մարդկանց: Նրանք ոտքով էին եկել Իջևանից, տեսնելու համար, թե ինչպես, Ռուդիկի խոսքերով ասած, «Զրնգանը մեռավ որպես լեգենդ, մեռավ որպես անհայտություն, որպես բնության չնանաչված պատառիկ»: Ճիշտ է Զրնգանի լեգենդը մեռավ, սակայն ծնվեց մի ուրիշը՝ խավար աղբյուրի խորքում եղած հեքիաթային աշխարհի և նրա գեղեցիկ դահլիճի մասին, որի հայտնագործողի անունով կոչվում է Դավթի դահլիճ: Այդ օրերին միայն Զրնգանը չէր, որ նվաճվեց: Համզայի վրա մենք գտանք բազմաթիվ ուրիշ վիհեր:

Մի քանի շաբաթ հետո Զրնգանի մասին պատմեցի աշխարհագրական ընկերության գիտնականների նիստում և պատկառելի գիտնականները զարմացան. «Մի՞թե Հայաստանում կա կարստային քարանձավ և դեռ նույնիսկ շիթաքարերով»:

(շարունակելի)

ԹԵՈԴՈՍԻ ԱՆԱՍԹԱՍՈՎ
(բուլղար գրող)




1853 թ. ամռանը պատերազմ բռնկվեց Ռուսաստանի ու Թուրքիայի միջև Սև ծովում գտնվող Ղրիմի թերակղզու համար:

Ռուսական զորքերն անցան Թուրքիայի վասալ Ռումինիայի տարածքով և հայտնըվեցին Դանուբի ափին՝ օսմանյան լծի տակ տնքացող Բուլղարիա մտնելու մտադրությամբ: Դա հուսադրեց բուլղար ժողովրդին: Բազմաթիվ կամավորներ անցան Ռումինիա և համալրեցին ռուսական բանակի շարքերը: Ոմանք էլ հանձն առան հետևել թուրքական զորքի տեղաշարժերին ու մտադրություններին և այդ մասին տեղյակ պահել ռուսներին:

Ռաքովսկին էլ ծանոթ թուրք մեծամեծների միջոցով կարողացավ թուրքական զորքում թարգմանիչ նշանակվել: Այդ կերպ նա կարող էր մոտիկից տեսնել, թե ինչ է կատարվում բանակում ու լուր ուղարկել ռուսներին: Կարճ ժամանակում Ռաքովսկին հետախուզական մի կատարյալ ցանց ստեղծեց: Սակայն թուրքերը հայտնաբերեցին ու բռնեցին նրան: Գլխավոր հրամանատարը կարգադրեց գնդակահարել Ռաքովսկուն, բայց թուր-

քական օրենքներին Ռաքովսկին լավ ծանոթ լինելով, հայտարարեց, որ իրեն կարող է դատել ու պատժել միայն Կոստանդնուպոլսի սուլթանական կառավարությունը, քանի որ նրա կողմից է պաշտոնի նշանակված: Փաշան էլ որոշեց նրան այնտեղ ուղարկել:

Մի քանի օր անց, վաղ առավոտյան, ձիավոր ժանդարմների մի ջոկ Շումենից ճանապարհ ընկավ դեպի Կոստանդնուպոլիս: Նրանց մեջ էր նաև շղթայակապ Ռաքովսկին:

Շուտով անցան Մեծ Քամչիայի գետահովտով ու մագլցեցին Քոջաբալքանի ոլորապտույտ արահետներով: Ճանապարհն անցնում էր Ռիշկու լեռնանցքով, որը տանում էր դեպի Կարնոբաթ և այնտեղից էլ Օդրին ու Պոլիս:

Ձմեռը վերջանում էր, բայց լեռներում դեռ ցուրտ էր, և նրանք գնում էին ձյունե անապատի միջով:

Ծանր մտքերը ճնշում էին Ռաքովսկուն: Ուզեց, որ իրեն տանեն Պոլիս, որպեսզի ժամանակ շահի ու փորձի դուրս պրծնել ուղեկցող թուրք զինվորների ձեռքից: Բայց կարո՞ղ էր արդյոք: Այնպես էր խորասուզվել այդ տխուր մտքերի մեջ, որ չնկատեց իրենց մոտեցող մի քանի ձիավորներին: Հավանաբար վաճառականներ էին կամ, ինչպես թուրքերն էին կոչում, թուջարներ, որոնք հետևում էին թուրքական զորքին ու սննդով ապահովում: Երևի դրա համար էլ չաուշը չվրդովեց:

— Բարի աջողո՞ւմ, աղա՛,— ողջունեց նրանցից մեկը,— կարո՞ղ ենք ձեզ միանալ: Վախեցանք լեռը մենակ հաղթահարել: Զորաքանակի մատակարարներն ենք: Լավ ապրանք ենք գնել Կարնոբաթում և շտապում ենք հանձնել:

Չաուշը, որը վարգում էր խմբի ետևից, անփութորեն նայեց իրենց հպած ձիավորներին, ապա հայացքը կանգ առավ նրանց քրտնած ձիերի վրա և կոշտ ու կոպիտ պատասխանեց.

— Հո ետ չե՞նք դարձնի: Փադիշահի ճանապարհն է, նրա բոլոր հպատակներին էլ կհերիքի:

Հայացքով չափեց վաճառականներին և նրանց վատ պահված ձիերին:

Վաճառականը մեղավորի պես ժպտաց.

— Ի՞նչ արած, չաո՛ւշ էֆենդի, վախն էր մեզ հալածում: Շուտով կմթնի, իսկ...— աչքերով ցույց տվեց ձիու վրա կուչ եկած շղթայակապ Ռաքովսկուն,— մենք թագավորի այսպիսի դուշմաններից ենք վախենում: Շատ են վխտում ամենուրեք: Դե, մեր փադիշահն էլ շատ գթասատ է... Հանդուրժում է իր հողի վրա...

Եվ ափով շոյեց քրտնած ձիու պարանոցը:

— Ճիշտ ես ասում, թուջար էֆենդի,— ձեռքով սառցակալած բեղերը սրբեց չաուշը,— ոչ միայն մենք՝ անասուններն էլ են տառապում: Սրիկաները բանակում էլ են տեղ արել, ինչպես սա, որին տանում ենք: Տանում ենք ոչ թե այստեղ, այլ, է՜, Պոլիս, որ կախաղանից ճոճվի: Տես, թե ոնց ենք հերն անիծելու:

— Իհա՛րկե, իհա՛րկե,— գլուխը թափահարելով խրախուսեց վաճառականը,— և դրանք՝ այդ մոսկվացիներն էլ իրենց փայը կստանան: Սուլթանն այնքան զորք ունի ո՜ր...

— Ինչպե՞ս չունենա,— բացականչեց չաուշը: — Միայն թող Շումենից դուրս գան, կխեղդենք ինչպես ծովում...

Խոսակցությունն աշխուժորեն շարունակվեց: Չաուշն ուղղակի ձանձրացել էր ամբողջ օրը լռելուց:

Շուտով ձյունապատ գագաթներից ծխի քուլաներ սփռվեցին: Ոլորանի ետևում հայտնվեցին նաև ձյան մեջ խրված գյուղական տներ: Գիշերելու համար իջևանատուն մտան: Իջևանատերն ու ծառաները ձիերի մոտ իրար անցան, իսկ ճամփորդները կրակարանի շուրջ խմբվեցին: Իջևանատերը թախտի վրա այծի մորթուց հաստ փռոցներ գցեց: Նիզամները տեղավորվեցին դրանց վրա ու աշխույժ զրույցի բռնվեցին:

Ռաքովսկին պառկել էր թախտի ծայրին՝ մեջքով դեպի նստածները: Ձեռնաշղթաները միայն ընթրիքի ժամանակ հանեցին: Չաուշը բանալին գոտու մեջ խրեց ու չնկատեց, որ երկար բեղերով զրուցասեր վաճառականը հետևում է իրեն:

Ռաքովսկին մատով իսկ չդիպավ ուտելիքին: Հիմա դա չէր կարևորը: Շղթայի արճիճով թաքուն կարողացավ մի բան գրել փոքրիկ փայտյա ափսեի կողքին իջևանատիրոջ թողած թղթի պատառիկի վրա: Իջևանատերն իր գործը գիտեր, Ռաքովսկու ծանոթն էր:

Մի պահ չաուշի ու վաճառականի խոսակցությանն ականջ դրեց: Ձայներն իրեն ծանոթ թվացին, հատկապես երկար բեղերով այն մեկինը: Թուրքական զորքին վերաբերող գովեստները չաուշին դուր էին գալիս: Միայն ժամանակ առ ժամանակ ագահ հայացք էր նետում բանտարկյալի լիքը ափսեին:

Երկար բեղերով վաճառականը նկատեց այդ:



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

— Թագավորի դուշմանն է. չաուշ էֆենդի, այդ էլ է բավական. որ տեղը տաք է,— և ափսեն չաուշի առաջը հրեց. — Դու կեր, որ մեծ գործ ես կատարում՝ թագավորին ես պահպանում: Իսկ այս սրիկան կարող է նաև քաղցած մնալ: Եվ հետո տղաներն էլ պետք է լավ ուտեն, թե չէ այս ցրտին... Վաղը ճանապարհը միասին ենք շարունակելու: Արժանի են հյուրասիրության: Հիմա պատերազմ է, զինվորը պետք է քաղցած չմնա...

Չաուշը բերանը բացեց, որ մերժի, բայց նիզամների անհագ հայացքներին հանդիպեց: Իսկապես էլ դուրանը ուղղափառներին արգելում է գինի և օղի գործածել, բայց հիմա պատերազմ է:

Երկար բեղերով վաճառականը մի քանի մեջիդիե նետեց իջևանատիրոջը.

— Օղի, բայց լավագույնը լինի, հա... մեղրով տաքացված:

Մինչև ուշ գիշեր ուտում ու խմում էին նիզամները. չէ՞ որ չաուշն էլ էր բաժակ բարձրացնում... Ծուտով հարբեցին, գլորվեցին թախտի վրա: Վերջապես չաուշն էլ փռվեց պատի մոտ: Երկար բեղերով վաճառականն հայացքով պառկելու տեղ փնտրեց: Բարձրաձայն հորանջեց ու ոտքի ելավ: Օրորվեց ու քիչ մնաց չաուշի վրա ընկներ: Նույնիսկ բռնեց նրա գոտուց, ուր կախված էր բանտարկյալի ձեռնաշղթաների բանալին: Չաուշն այնպես հարբած էր, որ չշարժվեց անգամ: Հետո վաճառականը մոտեցավ Ռաքովսկուն ու ոտքը սեղմեց: Բանտարկյալը զայրացած գլուխը բարձրացրեց և աչքերը զարմանքից չռվեցին. իր առաջ կանգնած էր հետախուզության իր լավագույն ընկերը: Նա լռությամբ բանալին ձեռնաշղթաների մեջ պտտեց ու մինչ Ռաքովսկին անաղմուկ ձերբազատվում էր շղթաներից, ընկերը մատներով սեղմեց գազե լամպի պատրույգը:

Առավոտյան չաուշն ու նիզամները իզուր էին իջևանատնով մեկ կատաղած վեր ու վար անում: Բանտարկյալի ու վաճառականների հետքն անգամ չկար: Անհետացել էին նաև իջևանատերն ու նրա որդին:

Թախտի վրա մնացել էին ոլորված ծանր շղթաներն ու նրանց կողքին վաճառականի ծաղրական ժպտացող երկար բեղերը...

**Բուլղարերենից թարգմ.**
**ԶԱՐԻ ԹԱՆԳԱՐԱՆՅԱՆԸ**

1829 թվականին Էրզրումից ու շրջակա գյուղերից Ծալկայի շրջան գաղթեցին մեր պապերը՝ ընդամենը 1200 ընտանիք: Եկան, հիմնվեցին Ջավախքում: Դա, այսպես ասած «հանգիստ» գաղթ է եղել, ու ժողովուրդը հետը բերել է իր տնտեսության անհրաժեշտ շարժական մասը: Նոր գյուղերը պահպանել են հին անունները: Հիմա շրջանում տասներկու հայկական գյուղ՝ կա, որոնք համարյա բոլորն էլ ունեն հայկական միջնակարգ դպրոց: Առաջ ամենամեծը Ղուշչի գյուղն էր, և 1967 թվականին հենց այստեղ էլ հիմնադրվեց պատմաազգագրական թանգարանը:

Հին զարդեր ու մասունքներ կան թանգարանում, որոնցից մեծերը չէին ուզում բաժանվել, նրանց թվում էր, թե թանգարանին տալով՝ ընդմիշտ բաժանվում են դրանցից: Հողով լցված թոնիրներից, տան խորշերից ու անկյուններից գտնվում էին հին ամաններ, գործիքներ, արծաթե դրամներ, որոնք հողից ու մոխրից խունացած, մաշված տեսք ունեին:

Հիմա թանգարանի տարբեր բաժիններում դասակարգվել, առանձնացվել պահվում են այդ առարկաները, որոնցից յուրաքանչյուրն իր պատմությունն ունի:

Թանգարանի ցուցանմուշները հավաքել, բերել են հիմնականում աշակերտները, բայց նրանցից օգնել են մեծերը:

Մոտ մի տարի առաջ



գյուղում կառուցվեց դպրոցի նոր, մեծ շենք, որտեղ և փոխադրվեց թանգարանը:

Պատմության բաժնում պահպանվում են շրջանի գյուղերի, դպրոցի, Հայրենական մեծ պատերազմի մասնակիցների մասին նյութեր, փաստաթղթեր: Առավել հին հավաքածուներ կան ազգագրության բաժնում, որը համարյա թե ամենամեծ բաժինն է:

Դա ամբողջ այն հարստությունն է, որ 1829 թվականին կարողացան բերել, ազատել ոչնչացումից: Այստեղ կան Էրզրումի ազգային տարազի բոլոր տեսակներից՝ կանացի գլխանոցից մինչև տղամարդու գուլպա: Առօրյա օգտագործման իրեր՝ խեցեղեն ու պղնձե ամաններ, գյուղատնտեսական գործիքներ՝ գութան, մանգաղ, սայլերի անիվների բազմաթիվ տեսակներ, տարբեր չափերի մաղեր: Կան տեղական կովի պանրից (չեչիլ) ուլունքներ, որ ունեն սաղափի կարծրություն ու փայլ, ծղոտե զանազան իրեր, զարդեղեն:

Թեև համեմատաբար քիչ, բայց պատմական նշանակություն ունեցող իրեր են պահվում հնագիտության բաժնում՝ բրոնզե դաշույններ, կացին, հին սաղավարտի մասեր, երկանք, տարբեր չափերի կավանոթներ, սանդ և այլն: Այս իրերից մի քանիսը՝ օգտագործվել են մեր թվարկությունից առաջ, մի քանիսը մինչև մ. թ. ա. 2—3-րդ դարերը: Բավականին հարուստ է

դրամագիտության բաժինը, որտեղ կան մի քանի հարյուր հին դրամներ, անցյալ դարի թղթադրամներ:

Իր այս հետաքրքիր նյութերով թանգարանն արժանացել է հայ, վրաց և ռուս գիտնականների ուշադրությանը, որոնք այցելել են այնտեղ:

Այնուամենայնիվ, ամենամեծը բանահյուսության բաժինն է: Դրանք պատկանում են բանահյուսական բոլոր ժանրերին ու տեսակներին:

Այն խոշոր, նախշազարդ քարերը, որոնք մեր հայրերն անպայման դռների ու լուսամուտների վերևում էին դնում, հիմա վաստակավոր ուսուցիչ Հակոբ Միքայելյանի ջանքերով, որ թանգարանի նախաձեռնողներից ու կազմակերպիչներից է, հին տներից հավաքվում են թանգարանում, ստեղծելու համար ևս մի բաժին՝ քարեդարան: Իսկ «սատանի եղունգով» (օբսիդիանով), որով մենք ձնծաղիկ էինք հանում գետնից, և այլ երկրաբանական նյութերով հիմա ստեղծվում է մի նոր՝ երկրաբանա-աշխարհագրական թանգարան: Այնտեղ արդեն կան շրջանում տարածված ապառատեսակների նմուշներ, օգտակար հանածոների տեսակներ, նաև հերբարիումներ՝ տարբեր բույսերից ու դեղաբույսերից:

Հին, հրաշալի պատմությունները կորած չեն: Թանգարանը մեծ տուն է, որտեղ ապրում են բազմաթիվ գերդաստաններ և որն անվերջ ընդարձակվում է:

ՎԱՐՈՒԺԱՆ ԱՅՎԱԶՅԱՆ




Մի քանի տարի է, ինչ զբաղվում եմ բանահավաքչությամբ: Շրջում էի գյուղից-գյուղ, գրի առնում հեքիաթներ, ասացվածքներ, պատմություններ: Բավականին գրի առած երգեր ունեի, և դպրոցում որոշեցինք ստեղծել ազգագրական երգչախումբ: Ոսկեհասկ գյուղում բնակություն են հաստատել Մուշից, Տարոնից, Սասունից և այլ գավառներից գաղթածները: Պիոներները սկսեցին գրի առնել իրենց տատիկներից ու պապիկներից ազգագրական երգերը: Արդեն 2 տարվա պատմություն ունի «Մուշ» երգչախումբը, որտեղ ընդգրկված են 20-ից ավելի դպրոցականներ: Երգչախումբը համերգներով հանդես է եկել շրջանի դպրոցներում, կթվոր անասնապահների և գյուղի աշխատավորների մոտ:

Օրեցօր ընդարձակվում է մեր երգացանկը: Բոլորն էլ հետաքրքրությամբ են ունկնդրում «Նարոյ-Նարոյ» ու «Նուբարը», «Ախպեր-ախպերն» ու «Քշ գնա օտարը», «Յարիմոն» ու «Մշու երգերի շարքը», «Գըքելերը» ու մյուս երգերը:

Մեր գյուղում Մկրտիչ պապիկի ղեկավարությամբ գործում է ազգագրական թանգարան, որտեղ կտեսնեք արոր ու գութան, հին կենցաղային իրեր, գյուղի անցյալն ու ներկան պատկերող վահանակներ: Մենք հաճախ ենք լինում թանգարանում և այնտեղ էլ թևածում է ազգագրական երգը:

Վերջերս սկսել ենք սովորել ազգագրական պարեր, որոնք զուգակցում ենք երգերին: Եթե տարազներ ձեռք բերելու հարցով մեզ օգնեն շեֆ կազմակերպությունները, ապա մեր երգչախմբի ելույթները ավելի տպավորիչ կլինեն:

ԳԱՅԱՆԵ ՂԱՐԱԽԱՆՅԱՆ
Ախուրյանի շրջանի Ոսկեհասկի միջն. դպրոցի ավագ ջոկատավար, «Մուշ» ազգագրական խմբի ղեկավար

ԳԱՅԱՆԵ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ




Մի աղջիկ կա տարօրինակ,
Նա քայլում է անձրևի տակ
Եվ չի թրջվում.
Ի՜նչ գեղեցիկ է աշխարհը
Անձրևի տակ:

Տարօրինա՜կ, տարօրինա՜կ
Աղջիկը այդ
Միծաղում է,
Եվ ամպերը ասես մեկից
Հեռանում են,

Եվ երկնքի բացված դեմքին
Շողշողում է արևը վարդ.
Ի՜նչ գեղեցիկ է աշխարհը,
Արևի տակ...



Վազում են դաշտերով հերկած
Ճերմակաշոր ձնծաղիկներ,
Մանուշակը մերկ, ոտաբաց
Ձայն է տալիս՝ կանգնե՜ք, քույրե՜ր:

Իսկ արևի շողը տաքուկ
Ճնճղուկին է շոյում բնում,
Թռչկոտում է հորթը խենթուկ,
Օրը քնից վեր է կենում:

Ի՜նչ հրաշք է, անուշ գարուն,
Որն այս մանուկ այսքան սիրուն,
Առնեմ տանեմ իմ մայրիկին,
Իմ քույրիկին, ով պատահի՝
Ամեն մեկին...

Մի գյուղում մի իմաստուն կար: Նա սիրում էր ժամերով նստել առվի ափին ու միտք անել աշխարհիս անհաստատ ու փոփոխական լինելու մասին:

Մի օր էլ ահա այդպես նստած, սուզվել էր մտքերի մեջ, իսկ նրա գլխավերևում թռչում էր ճնճղուկին հետապնդող արծիվը: Ճնճղուկը կտուցով բռնել էր մի մրջյունիկ և առվի վրայով թռչելիս մրջյունիկին կտուցից բաց թողեց: Մրջյունիկն ընկավ իմաստունի ոտքերի մոտ: Իմաստունը վերցրեց մրջյունիկին, նայեց, խորհեց ու տարավ տուն: Չմոռանանք ասել, որ իմաստունը նաև կախարդ էր, կարողանում էր մի տեսակի էակին դարձնել մի այլ տեսակի: Մրջյունիկին տուն բերեց, դրեց հատակին և դեմքը դարձնելով արևելք, արտասանեց հարկավոր խոսքերը, որից մրջյունիկը սկսեց աճե՜լ, մեծանա՜լ, փոխել իր տեսքը և դարձավ մի փոքրիկ աղջնակ: Իմաստունը բռնեց նրա ձեռքը և տարավ իր մի ընկերոջ մոտ, որն ուներ մի քանի երեխա և դժվար չէր նրա համար իր երեխաների հետ մեծացնել նաև այս մեկին:

Անցան տարիներ և աղջիկը մեծացավ, դարձավ մի սլացիկ գեղեցկուհի:

Իմաստունն ու նրա ընկերը նստեցին խորհրդի, թե այսուհետև ինչպե՞ս վարվեն նրա հետ:

— Ես կարծում եմ,— ասաց իմաստունի ընկերը,— հարկավոր է գտնել այնպիսի մեկին, որի հետ աղջիկը շարունակի իր հետագա կյանքը: Մեր գյուղում շատ կան ամրապինդ, գեղեցիկ տղաներ: Նրանցից թե ում կուզենա ընտրել, եկ հարցնենք իրեն:

Աղջիկը եկավ, կանգնեց նրանց առջև (նա իսկապես խելացի էր ու գեղեցիկ) և ասաց.

— Օ՜, խնդրում եմ ներող լինեք, եթե ասեմ՝ որ ձեր մատնանշած տղաները իրենց արժանիքներով զիջում են ինձ, իսկ դուք քանի՜-քանի անգամ ասել եք, որ միայն հավասարության դեպքում են սրտերը միանում:

— Դու իրավացի ես,— միտք անելով պատասխանեց իմաստունը,— բայց այս աշխարհում ո՞վ է ամենից արժանավորն ու անթերին: Ամենաուժեղը արևն է՝ նա հաղթում է նույնիսկ խավարը:

— Լավ, թող լինի արևը,— համաձայնեց աղջիկը:

Եվ առավոտյան, հենց որ արևը բարձրացավ Հինդուկուշի լեռան գագաթը,

ԱՎՂԱՆԱԿԱՆ ՀԵՔԻԱԹ—



Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

իմաստունը ձայն տվեց արևին.

— Օ՜, մե՜ծդ լուսատու, այս աղջիկը արժանի է ունենալ ամենահզոր ընկերը: Նրան քեզ ուղեկից չե՞ս դարձնի:

— Նա չքնաղ է,— պատասխանեց արևը,— և ես ուրախ կլինեի, եթե իմ կողքին հավիտյան փայլեր նա: Բայց, ավա՜ղ, ամենաուժեղն ու ամենակարողը ես չեմ, նույնիսկ ամենափոքր ամպիկը ծածկում է իմ դեմքը:

Իմաստունն ու աղջիկը գնացին ամպի մոտ, գտան նրան բարձր լեռան ստորոտին պառկած և նույն խնդրով դիմեցին նրան:

— Ինչ արած,— ասաց ամպը աղջըկան,— ես էլ ուրախ կլինեի, որ դու իմ կողքին լինեիր, բայց իմ հզորությունը սահմանափակ է, հզորը, ա՛յ, քամին է, որ քշում է ինձ ուր ուզում է:

Նրանք գնացին քամու մոտ:

— Մի՞թե ուժ և զորություն է իմ ունեցածը,— բացականչեց քամին,— թույլ ամպերն ու ճկուն ծառերն են միայն ինձ ենթարկվում, նայեք դիմացի լեռանը, անկործանելին, ա՛յ, նա է, տեսեք ինչ հաստատուն է նստած գետնի վրա: Իմ կարծիքով նրանից հզորը չկա:

Իմաստունը դարձավ լեռանը:

— Ո՛չ, ո՛չ, արդար լինելու համար պետք է ասեմ, որ ամենաիսկական ուժն ու զորությունը մրջյուններինն է,— տխուր պատասխանեց լեռը:— Ճիշտ է, ես քամու առաջ դեռևս չեմ ընկրկում, բայց մրջյունները իմ ամբողջ մարմինը փորփրել են, ընդարձակել նրա բոլոր ճեղքերը: Մրջյունները իմաստուն են և աշխատասեր, ես անզոր եմ նրանց առաջ, ոչ քշել կարող եմ նրանց, ոչ էլ ինքս կարող եմ փախչել նրանցից: Շուտով իմ վերջը կգա:

— Այստեղ սպասիր ինձ,— միտք արավ ու ասաց իմաստունը աղջկան, մոտեցավ լեռանը, ընտրեց լեռան լանջը փորփրող մրջյուններից մեկը և վերադարձավ աղջկա մոտ:

— Դու լսեցիր բոլորը,— ասաց նա աղջկան,— տե՛ս... նա մոտենո՞ւմ է քեզ:

— Իհարկե՛,— պատասխանեց աղջիկը,— դու էլ լսեցիր, չէ՞, որ նա իր արժանիքներով հավասար է ինձ, նա իրոք ամենաուժեղն է:

Այն ժամանակ իմաստունը երեսը դարձրեց արևելք, արտասանեց իրեն հայտնի կախարդական խոսքը և աղջկա մարմինը սկսեց փոքրանալ, փոխել ձևը, և նա նորից դարձավ մրջյուն:

Զույգ մրջյունները ձեռք-ձեռքի տվին և գնացին, աներևութացան խոտերի մեջ:

Մշակումը՝ Ս. ՍԱԽԱՐՆՈՎԻ



# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԹԱՆԳԱՐԱՆ Է ԲԱՑ ԵՐԿՆՔԻ ՏԱԿ

**Հայկական ճարտարապետական հուշարձաններին նվիրված զրույցների շարքը, որ դուք այս համարից ըսկըսած կկարդաք մեր ամսագրում, նպատակ ունի ընթերցողին ներկայացնել քրիստոնեական շրջանի հայկական պաշտամունքային տիպական շինություններ կամ ամբողջական վանական համալիրներ։**

Հայաստանը չափազանց հարուստ է ճարտարապետական հուշարձաններով, որոնք ցրված են նրա ողջ տարածքով մեկ, ավելի կամ պակաս խտությամբ։

Հայաստանում պահպանվել է նաև նախնադարյան կառուցվածքների մի ամբողջ հովիտ, որի նմանները քիչ են հողագնդի վրա։ Սիսիանի շրջանի պատանիները, հավանաբար, լավ գիտեն Զորաքարեր կոչվող այդ հովիտը, որն իր անվանումն ստացել է մի ավանդությունից, ըստ որի այնտեղ զորք է թաղված։ Նույնիսկ բոլորովին անտեղյակ մարդն այստեղ համակվում է երկյուղածությամբ։ Պատկերացրեք մի բավական ընդարձակ, անհանգիստ տեղանք և ձեզ՝ կանգնած նախնադարյան մարդու տուն-կացարանի առաջ։

Երկու ահռելի զուգահեռ քար, որ կազմում են տան երկայնական պատերը, դրանց վրա թեք հենված երկրորդ զույգ քարերը, որոնք համարյա տանիք են կազմում և վերջապես մի ուրիշ հսկա քար, որ ծածկում է մնացած ճեղքը։ Ահա սա է նախնադարյան մարդու տունը, որն այլ կերպ կոչվում է դոլմեն։

Այնտեղ կան նաև մենհիրներ՝ բրոնզի դարի պաշտամունքային հուշարձաններ, որոնք հողի մեջ մխրճված երկար քարեր են. դրանց վերևի մասում մի անցք կա, որը, հավանաբար, ծառայել է քարը կապելու, տեղափոխելու համար:

Եվ, վերջապես, կան կրոմլեխներ՝ բրոնզե դարի պաշտամունքային շինություններ՝ վիթխարի քարերի կլոր ցանկապատեր:

Հազարամյակների շունչ ունեցող այս համալիրի տարրերի պատահական դասավորվածության մեջ չափազանց տարօրինակ է դիտվում երկրաչափական ճիշտ ձևը: Չէ՞ որ կրոմլեխը ոչ այլ ինչ է եթե ոչ՝ ճիշտ շրջանագծի վրա դասավորված քարերի խումբ, որոնք իրենց համաչափություններով մոտենում են այանը: Սակայն դրանով չի վերջանում: Նույն կենտրոնից ավելի մեծ շառավղի շրջանագծի վրա դասավորված են երկրորդ շարք քարերը: Այս հետաքրքիր կառուցվածքը հատկապես լավ է երևում շրջակա բարձունքներից:

Ջրաքարերի մասին անշուշտ գիտեն Սիսիանի շրջանի պատանիները:

Բայց եթե առաջնորդվենք այս տրամաբանությամբ, դուրս կգա, որ Սմբատաբերդի մասին գիտեն միայն Եղեգիս գյուղի պատանիները, Ամբերդի մասին՝ միայն Աշտարակի, իսկ Կաքավաբերդի մասին գուցե և ոչ ոք, բացի լեռնագնաց տուրիստներից:

Պատկերացնենք, թե այցելել ենք մի օտար երկիր: Մեզ հաճելի՞ կլինի շփվել տեղացի մեկի հետ, որը ոչինչ չգիտի իր երկրի մասին, չգիտի նրա պատմությունը, նրա աշխարհագրությունը, ճարտարապետությունը, երգերը... Բնավ: Մենք կշտապենք մտերմանալ այնպիսի մեկի հետ, որը ճանաչում և սիրում է իր երկիրը:

Զուր չէ, որ հայր Ղևոնդ Ալիշանը հավասարության նշան էր դնում այդ երկու հասկացությունների միջև՝ հայրենիքը սիրելու համար պիտի ճանաչել զհայրենին:

Մեր նախնիներից մենք ստացել ենք անգնահատելի ճարտարապետական ժառանգություն: Մենք ենք այդ հարստության ժառանգորդները: Ուրեմն ճանաչենք և աչքի լույսի պես պահպանենք մեր ճարտարապետական հուշարձանները:

**ՈՒՆՈՒՖԱՐ ՄԻՆԱՍՅԱՆ** ճարտարապետ

## ՏՈՄԱՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ



(Տես՛ էջ սկսած 10-ից մինչև 9-ը)

Հոռին հայոց տոմարի երկրորդ ամիսն է, հերթականությամբ համընկնում է փետրվարին: Անանիա Շիրակացին (VII դար) և Հովհաննես Իմաստասերը (1045—1129) նշում են, որ Հոռին ևս Հայկի դուստրերից մեկի անունն է: Վանական Վարդապետը (1181—1257), Հոռի բառը համարում է ծագած «հոր» գոյականից: Այդ ամսին, գրում է նա, մարդիկ իրենց բերքը (ցորեն, գարի, գինի և այլն) ամբարում էին հորերի մեջ: Քանի որ հոռի ամիսը աշնան ամիս է եղել, գիտնականների մեծ մասը այդ բացատրությունը հավանական է համարում, որովհետև տարվա այդ ժամանակ, իրոք, հայ շինականը բերքը հորում էր, որպեսզի չփչանա:

Հայոց տոմարով տարին ունեցել է 12 ամիս, ամիսը 30 օր: Որպեսզի տարվա օրերի թիվը (365) լրանա, ունեցել ենք նաև լրացուցիչ 13-րդ ամիսը, որը կոչվել է հավելյաց ամիս՝ 5 օր պարունակությամբ: Հին հայերը ոչ միայն անվանել են ամիսը, այլև ամեն մի ամիս ունեցել է իր նշանը: Տարվա 12 ամիսների նշանները կապել են 12 համաստեղությունների հետ և քանի որ ամեն համաստեղություն նմանեցվել է որևէ կենդանու կամ առարկայի (ցուլ, խոյ, ձուկ, կշեռք և այլն), ուստի ամիսներն ունեցել են հիշյալ նշանները: Հոռի ամսվա (փետրվար) նշանն էր ցուլը: Գիտնականները գտնում են, որ 12 ամիսներից յուրաքանչյուրին մի համաստեղության անուն տալը ծագել է մեզանից մոտ 5000 տարի առաջ, Փոքր Ասիայում և Հայաստանում:

ՌԱՖԻԿ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ



# ՄԻՋԱՏՆԵՐԸ՝ ԵՐԿՐԱԳՈՐԾ

1926 թվականին գերմանացի բնագետ Շմիդբերգերը նկատեց, որ կեղևակերի թրթուրները ուտում են ոչ թե ծառի բնափայտը, այլ կաղնու բնափայտի մեջ մայր բզեզի փորած անցքերում հայտնված թթվասեր հիշեցնող ինչ-որ սպիտակ, փափուկ զանգվածը:

Ավելի ուշ պարզվեց, որ դրանք սնկեր են: Եվ ուրիշ ոչ մի տեղ, բացի կեղևակերի բներից, այդ տեսակի սնկեր չեն աճում:

Երկար ժամանակ առեղծված էր համարվում, թե մայր բզեզները ինչպե՞ս են ծառից ծառ տեղափոխում սնկի միցելները: Միայն 1956 թվականին պարզվեց, որ կենդանու մարմնի վրա, խիտինային զրահի օղակների արանքում կան փոքրիկ գրպանիկներ: Դրանց անվանեցին «սնկային դեպոներ»: Հայրական բնից դեպի կյանք թռչող էգ բզեզը որպես «օժիտ» իր հետ անպայման տանում է անզեն աչքի համար անտեսանելի սնկի պտղամարմիններ, որպեսզի դրանք աճեցնի իր նոր բնում: Հատուկ գեղձերը սնկի պտղամարմիններով լեցուն գրպանիկի մեջ են արտադրում սպիտակուցներով և ճարպերով հարուստ ինչ-որ հեղուկ: Դա սննդարար միջավայր է, հատուկ արգանակ, որի մեջ, ինչպես մանրէաբանական լաբորատորիայում, սնվում և բազմանում են սնկերը:

Երբ սնկային դեպոյից սնկերը փոխադրվում են այլ ծառի բնափայտի մեջ, մայր բզեզը շարունակում է հոգ տանել դրանց նկատմամբ: Ժամանակ առ ժամանակ սողոսկում է սնկերով ծածկված անցքերի մեջ, սնկային ճյուղերը թրջում իր մարմնի արտազատուկներով: Դրանք պիտանի սնկերի վրա ներգործում են որպես աճման խթանիչներ, իսկ «անպետք» մոլախոտային սնկերի աճը խիստ կասեցնում են:

Տեսնո՞ւմ եք, որքան խելացի է «մտածված»: Նույն նյութի միջոցով բզեզը մի կողմից նպաստում է օգտակար սնկերի աճին, «պարարտացնում է», մյուս կողմից պայքարում է «մոլախոտերի» դեմ: Միաժամանակ էգ բզեզը իր բնում պահպանում է սնկերի համար անհրաժեշտ խոնավությունը: Երբ բնում օդը շատ է չորանում, բզեզը բոլոր մուտքերի ու ելքերի անցքերը փակում է թեփով, որը առաջանում է բնափայտը փորելիս, իսկ երբ շատ է խոնավ՝ անցքերը բացում է:

Եթե բզեզին հեռացնենք իր բնից, ապա կարճ ժամանակից հետո սնկերի աճը դանդաղում է, նրանք ճնշվում են այլ, մոլախոտային սնկերի կողմից և ոչնչանում են: Հասկանալի է, դրա հետևանքով ոչնչանում են նաև թրթուրները, զրկվելով իրենց հիմնական ու միակ սննդից:

Նշանակում է, միջատներն էլ կարող են զբաղվել «երկրագործությամբ», միայն թե այստեղ «մշակության» եղանակները և մշակվող «կուլտուրաները» այլ են:

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15,
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38,

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.



ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

# ՁՄԵՌ

Իմ լեռնային Հայաստանում,
Երբ որ ցրտերն են խստանում,
Դեմ է կանգնում սարը քամուն,
Բայց խենթ քամին չի նուրանում,
Այլ գազազում է, խստանում.
Մոլեգնում է ու.պես սամում,
Սարին անդորր չի խոստանում:

Սարն էլ իր սեգ սարաստանում,
Ոտքը ձորի քարաստանում՝
Դեմ է անում կողը քամուն,
Փաթաթվում է հաստ սավանում,
Անմեղ մանկան տեսք է առնում,
Քուն է մտնում, հանգստանում:

Սարի համար Հայաստանում
Կարճ գիշեր են հողմ ու սամում,
Որ աշունով իրիկնանում,
Գարունով է միշտ լուսանում:

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ
Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. (պատ. քարտուղար)
Գեղ. խմբագիր՝ Մ. ՔԵՉՕՂԼՅԱՆ, տեխ. խմբագիր՝ Շ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ, սրբագրիչ՝ Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

*Հանձնված է տպագրության 29.12. 1983 թ.: Ստորագրված է տպագրության 25.2.1984 թ.: ՎՖ 04545: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակ՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 64052: Պատ. 3428: Գինը՝ 15 կ.:*

Сдано в набор 29.12.1983 г. Подписано к печати 25.2.1984 г. Формат 70×100 1/16. ВФ 04545. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 64052. Заказ 3428. Цена 15 коп.
Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

ԻՆԴԵՔՍ՝ 77806
ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.



ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆ. «ԽԱՂԱՂ ՕՐ»